# Հարգելի հայրենակից՝

Աշխարհասփյուռ հայության առջև այսօր ծառացած է հայապահպանության գերխնդիրը: Հեռու լինելով հայրենիքից՝ գոյատևման պայքարում հայը կորցնում է իր ազգային նկարագիրը, իր լեզուն, հեռանում է իր ազգային արմատներից, ավանդույթներից, սովորություններից, դադարում է կրել դարերով ստեղծված հայկական մշակութային արժեքները:

Մայրենի լեզվով չխոսելը, չկարդալը, չստեղծագործելը, չմտածելը. հայեցի լեզվական մտածողության կորուստ է: Լեզուն ազգային ինքնության պահպանման հիմքն է: Հայոց լեզուն մեր ժողովրդի գոյատևման գլխավոր պատվարն է: Ազգի գոյության հիմնական կռվանները մայրենի լեզվով խոսելն է, մտածելը, գրելը, կարդալը: Այս գիտակցումով է հայը պատմական բոլոր ժամանակներում պահել, պահպանել իր այբուբենը: Դեր Զորի անապատներում, գաղթի ճանապարհներին հայ մայրը ավազի վրա է մանկանը սովորեցրել մաշտոցյան գրերը: Դառը ճակատագրի բերումով հալածվելով, նորեն տուն շինելով, նա կառուցել է եկեղեցի, դպրոց, որպեսզի իր երեխաների հիշողությանը պահ տա մայրենի խոսքը, գիրը, որոնցով զինված՝ հայորդիները կարող էին դիմակայել ամեն տեսակի արհավիրքի:

Գոյության կռվան, հայ ինքնության զրահ հայոց լեզվի պահպանման խնդիրն այսօր ազգային անվտանգության խնդիր է: Սփյուռքում աստիճանաբար պակասում է հայերեն խոսող հայերի թիվը, սփյուռքահայերի ստվար մասը չի տիրապետում մայրենիին: Վտանգված է Սփյուռքի լինելիությունը, առկա լեզվամշակութային ինքնության կորստի սպառնալիքը: Սփյուռքում ազգային ինքնության թուլացումը արտաքին սպառնալիք է Հայաստանի, ողջ հայության համար: Սփյուռքի ուծացմանը դիմակայելու խնդիրը համազգային գերխնդիր է:

ՀՀ սփյուռքի նախարարությունը սփյուռքահայության ազգային ինքնության պահպանմանն ու զարգացմանն ուղղված իր ծրագրերի իրականացումը տեսնում է սփյուռքյան համայնքների, շահագրգիռ բոլոր կազմակերպությունների հետ համագործակցության մեջ:

Սփյուռքում հայապահպանության հիմնական օջախներն են հայկական դպրոցները: Սփյուռքի համայնքային կազմակերպությունները պետք է ոչ միայն պահպանեն, զարգացնեն առկա կրթական կառույցները, այլև հիմնեն նորերը, որպեսզի մաշտոցյան մեր ոսկեղենիկ մայրենին դարձնենք ազգային ինքնության, պահպանման գործոնն ու կռվանը:

Կոչ ենք անում Ձեզ՝ նպաստել հայկական դպրոցներ հիմնելու այնտեղ, ուր հայ երեխան առայսօր չունի հնարավորություն հայոց լեզուն, հայոց պատմությունը սովորելու, որպեսզի հայ երեխան հայ մնա, իսկ հայ կմնա ամենից առաջ իր նախնիների, պապերիտատերի, ծնողների լեզվով գրել-կարդալով, հաղորդակցվելով: Հայ երեխան պետք է ունենա հայեցի մտածողություն: Հայկական դպրոցների բացակայությունը վտանգում է ազգային ինքնագիտակցությունը: Այսօր Մայրենիից հեռացող մեկ, երկու հայ երեխան վաղը կդառնան ազգային արմատներից, հայ ինքնության գիտակցումից զուրկ հարյուրավոր-հազարավորներ:

*ՀՀ սփյուռքի նախարարություն*

## Явление Нового года

Зима приходит на еловых лапах.
За нею поспешает Дед-мороз.
У праздника зимы особый запах,
Порой до детских доводящий слёз.
Игрушками развешаны подарки.
Гирлянды обещаний на весу.
Год наступает новый, свежий, яркий,
На всё наводит снежную красу.
На отрывном календаре событий
Ушедший год в делах запечатлён.
Сверкают звёздных ожиданий нити
И каждый сам собою удивлён.

*Ашот САГРАТЯН.*

**Дорогие читатели!**

***Редакция журнала поздравляет Вас с наступившим Новым годом! От души желаем Вам крепкого здоровья, большого счастья, успехов, добрых надежд и всех благ в 2009 году!***

# 2009 ՀՈԳԵՎՈՐ ՏԱՐԻ Է

**2009 թվականը հոգևոր տարի է և յուրաքանչյուր անհատի համար ոգեշնչում և փոխակերպում է պարգևում: 2009 ըստ թվային արժեքների՝ 2+9=11, ցույց է տալիս, որ հոգևոր արժեքների նկատմամբ պիտի մեծանա հետաքրքրությունը: Բոլոր նրանց, ովքեր հոգևոր աշխարհի հետ կապի մեջ կլինեն, ծաղկուն շրջան է սպասում: Գործնական դաշտը կնահանջի և այդ ուղղությամբ յուրաքանչյուր քայլ նվազ արժեք կունենա հոգևորի հետ համեմատած, որովհետև գործնականին կփոխարինեն մտահղացումները: Մարդկանց մոտ կսկսվեն նոր գործելաոճի ուղղություններ... Ոգեշնչում և փոխակերպում. սրանք են ամենահիմնականը ողջ 2009 թվականի ընթացքում:**

2009 թվականը, ըստ հայկական հորոսկոպի, խոյի տարի է, իսկ չինականով՝ եզի: Իսկ այժմ, թե ի՞նչ է սպասում 12 կենդանակերպի տակ ծնվածներին:

***Խոյ*** – Տարին բարենպաստ է ու կլինի առանց տագնապների:
***Ցուլ*** – (այս տարում ծնվածների համար) Թշնամիները կչատանան, պետք է զգույշ լինել:
***Երկվորյակ*** – Սիրելու ժամանակներ են գալիս՝ անկախ տարիքից:
***Խեցգետին*** – Հաջողություններով, նոր ձեռքբերումներով լի տարի է սպասվում:
***Առյուծի*** տարում ծնվածներին սպասվում է ճամփորդություններով լի տարի:
***Կույսերի*** համար տագնապի և անհանգստության տարի է 2009 թվականը:
***Կշեռքներին*** սպասում են ընտանեկան հաջողություններ:
***Կարիճներին*** խորհուրդ է տրվում ամբողջ տարին լինել բժիշկների հսկողության տակ, քանզի նրանց սպառնում է առողջական վատ վիճակ:
***Աղեղնավորները*** մի շարք խնդիրներ կունենան երեխաների հետ կապված:
***Այծեղջյուրները*** ծնողներից շատ չպետք է ակնկալեն, որ չհուսախաբվեն:
***Ջրհոսներին*** սպասում են եղբայրների հետ անհաշտ հարաբերություններ:
***Ձկներին***, որոնք ծնվել են հենց ձկան տարում, սպասում են ֆինանսական հաջողություններ:

Հայաստանի Հանրապետությանը մինչև 2016 թվականը անընդհատ վերելք է սպասում, 2016 թվին երկրի զարգացումը կլինի գագաթնակետում, որից հետո սպասվում է աստիճանական անկում: Աշխարհում տիրող տնտեսական ճգնաժամը շատ չնչին կազդի մեր երկրի վրա: Հիմնականում չնչին չափով կտուժեն նրանք, ովքեր կապված են դրսի հետ: Չնայած աշխարհում շատ վայրիվերումներ են լինելու, սակայն դրանք Հայաստանին չեն առնչվելու:

# ԹՎԵՐԻ ԴԵՐԸ ՄԵՐ ԿՅԱՆՔՈՒՄ

Բոլոր ժամանակներում էլ մարդիկ զանազան նախապաշարումներ են ունեցել, որոնք վերաբերվել են նաև թվերին: Որոշ թվեր՝ ինչպես 6-ը, 13-ը կամ 666-ը, համարվել են անհաջող: Մեկնաբանությունները տարբեր են: Ասենք, 13-ը ռուսները կոչում են սատանայական դյուժին (մեկ դյուժինը 12-ն է): Համաձայն մի վարկածի, Քրիստոսի 12 աշակերտներից բացի եղել է 13-րդը, որը շատ անհաջողությունների պատճառ է դարձել: Ըստ մեկ այլ վարկածի, Խորհրդավոր ընթրիքը նախատեսված է եղել 13 հոգու համար, և 13-րդը եղել է Հուդան, որն էլ մատնեց Հիսուսին: Հայտնի է նաև, որ Քրիստոսը խաչվել է ուրբաթ օրը: Եվ եթե համընկնում են ամսի 13-ը և ուրբաթ օրերը, ապա նախապաշարված մարդիկ այդ օրը դառնում են չափազանց զգուշավոր:

Այս մասին զրուցեցինք տեր Շմավոն քահանա Ղևոնդյանի հետ:

«Շատերի մոտ տարածված է այն թյուր կարծիքը, որ Խորհրդավոր ընթրիքի ժամանակ Հուդան 13-րդն է եղել, բայց նայած թե ինչպես են հաշվում: Եթե հակառակ կողմից հաշվեն, նա կլինի առաջինը: Ինչ վերաբերում է ուրբաթ օրվան, այն եկեղեցու նվիրական օրերից մեկն է՝ պահոց օր է: Եվ ուրբաթ օրը քրիստոնյայի համար պետք է լինի ոչ թե վախի, այլ նվիրումի օր: Նա պետք է գիտակցի, որ այդ օրը Քրիստոսը խաչվեց մեր մեղքերի համար»:

13 թվի հանդեպ սնահավատությունը լայն տարածում ունի Եվրոպայի և Ամերիկայի գրեթե բոլոր երկրներում: Անգլիայում շենքերի 13-րդ հարկը բնակելի չէ և համարվում է տնտեսական: Վերելակում 13-րդ կոճակը



չկա, չկան նաև 13 համարի ավտոբուսներ:

Քրիստոնյաների շրջանում լայնորեն տարածված է նաև սնահավատությունը 666 թվի նկատմամբ: Ըստ շատերի, այն սատանայի թիվն է:

«Աստվածաշնչում 666-ը նեռի՝ սատանայի ճանաչման միջոց է, սակայն այդ թիվը, որպես այդպիսին, Աստվածաշնչից դուրս ոչինչ չի նշանակում: Եվ 6 թվի հետ կապված ամեն ինչ չէ, որ պետք է կապել սատանայի հետ: Այդ դեպքում Աստվածաշնչից էլ պետք է պատռել 666-րդ էջը՝ համարելով այն սատանայի էջ: Ծանոթներից մեկն իր պսակադրությունը հետաձգեց, քանի որ այն նշանակված էր հունիսի 6-ին, որը նաև ուրբաթ էր: Այսինքն՝ վեցերորդ ամսվա վեցերորդ օրը, որը նաև շաբաթվա վեցերորդ օրն էր: Չպետք է թույլ տալ, որ թիվն իշխանություն ունենա քեզ վրա, և ոչ մի դեպքում չպետք է դառնալ թվի գերին », - նշեց քահանան:

Մեր համաքաղաքացիներից շատերի կարծիքով կան նաև հաջողություն բերող թվեր: Դրանք են՝ 3-ը, 7-ը և 8-ը:

Ըստ քահանայի՝ 3 թիվն Աստվածաշնչում խորհրդանշում է Սուրբ Երրորդությունը, իսկ 7-ը համարվում է Աստծու թիվը, քանի որ Աստված ստեղծեց աշխարհը և 7-րդ օրը հանգստացավ:

Թվերի հետ կապված իր դիտարկումները ներկայացրեց նաև աստվածաբան Հրաչյա Ավետիսյանը. «Թվաբանությունը կարծես թե կառավարում է մեր ողջ կյանքը, որովհետև մեր կյանքում ամեն ինչ հաշվարկված է: Աշխարհում ոչինչ պատահական չէ, քանի որ Աստված ամեն ինչ հաշվարկով է ստեղծել, և դա շատ խորը թվաբանություն է: 1-ը աստվածային թիվ է և խորհրդանշում է Սուրբ Երրորդության միասնությունը: 2-ը վկայության թիվն է . 1-ի հետ միշտ պետք է լինի 2-րդը, որպես վկա, որպեսզի հավատան նրան: 3-ը խորհրդանշում է աստվածային երրորդությունը: 4-ը, ինչպես նաև 40-ը և 400-ը, փորձության թիվ են. 400 տարի Իսրայելի ժողովուրդը Եգիպտոսի լծի տակ էր, 40 տարի անապատի մեջ էր: 5-ը, 50-ը շնորհի թիվն են. Հիսուսի համբարձումից 50 օր հետո Սուրբ Հոգին իջավ երկրի վրա՝ վերնատուն, ուր նըստած էին Հիսուսի աշակերտները: Եվ Սուրբ Հոգին սկսեց աշակերտների միջոցով գործել: 6-ը մարդու թիվն է. Աստված վեցերորդ օրը ստեղծեց մարդուն: 7-ը կատարելության թիվն է. այդ օրն Աստված հանգստացավ, քանի որ արդեն իր գործը կատարել էր: 8-ը Հիսուս Քրիստոսի թիվն է. շրջված 8-ը հավիտենականության խորհուրդ ունի: Իսկ 666-ը հակաքրիստոսի թիվն է: Ողջ Աստվածաշունչը հիմնված է թվային ծածկագրերի վրա, որոնք մինչ այժմ անհնար է լիարժեք վերծանել»:

*Արևիկ ՉԱՓԱՐՅԱՆ*

# Գալդ բարի, Ցուլի փարի




Խաչի սեղանի շուրջ շարված են Մկստանի քեդխուդաները: Բաժակ է բարձրացնում Զոջ մուկը.

– Արյունակիցներ, տոն է Մկստանում. կրծու՜ում ենք… Աշխարհի աչքը մեզ վրա է: Այս խաչի սեղանին 1,5 հազարամյակով որոշելու ենք տիեզերքի ընթացքը: «Կ» տառով ինչ կա՝ հավաքեք: Կոնյակը թողեք, լավ զադ ա: Կատու չկա: Լա՜վ ա… Կնանի՞ք: Աստված դրանցից լավ բան չի ստեղծել, թող մնան… Կալստուկները հանեք: Ի՞նչ, կալստուկ չի, գալստուկ ա՞… Չէ մի՝ վիզկապ ա: Ռադ արեք… Հիմի լսեք՝ Գերագույնը Կատվանդու երկրում ՀԵՐՈՍ ԿԱՏՈՒ կոչումին տիրացավ:

Սեղանակիցները ցնծության ճիչեր են արձակում. (Գերագույնի կենացը, Գերագույնիի՜...: Որտեղ կատու, էնտեղ շուն… Գերագույնը Շանհայ գնաց… Գերագույնի կենացը…), բաժակներն անմիջապես դատարկվում և նորից լցվում են: Թող ամենքիդ հայտնի լինի՝ Գերագույնի տանն էսօր ծնվեց Մեծն Մկստանի հաջորդ Գերագույնը: Գերագույնի կենաաա՜ց… Տոն է Մկստանում: Տո՜ոն է մկան տարում… Հիմի լսեք, Մկան տարին մեր վրայով է, չպիտի անցնի: Գերագույնը հանձնարարել է դեմոկրատաբար քննարկենք անհրաժեշտաբար ունդունելով, որ մկան տարին մեզ համար լյոխ լյաա՜վ ա (տեղերից՝ կեցցե Լյոխը, լա՜ավ ա): Լավ է հատկապես քեդխուդեքիս և նմանապես հասարակ մկնիկների համար: Կա՞ մեկը, որ չի ունդունում: Չկա: Ադա, գրագիր, նշի առ, աշխարհի ժողովուրդներին իմաց տուր՝ Մկան տարին աննախադեպ է մեզ համար: Չը ունդունե՞ն՝ տկռապոկ արեք… Գերագույնի կենացը: Ապրեք, վիզ չթեքեցիք՝ խմեցիք: Դե, Գերագույնի կամքը լսեք՝ Մկան տարին մի քանի հազարամյակ պիտի մնա:

Մի անհամարձակ ձայն. – Զոջ քեթխուդա, օբյեկտիվ չէէ՜… ընդդիմություն կա, բան կա…

– Ով մեզ չունդունի օբյեկտ, կդարձնենք սուբյեկտ, սավսալակ: Մենք ենք ասողը, – վրա բերեց թամադան:

– Բա դա դեմոկրատիա՞ է, – շարունակեց նույն նվազ ձայնը:

– Երևելի մկներ, ես որ երկու բաժակ կոնծում եմ, կատաղության աստիճան բարիանում եմ: Բարությամբ ասեմ՝ դու, նեմռոտ մռութ, ափռ-ցփռ դուրս ես տալիս, դեմոկրատիա չէ՞: Խոսիր, որքան կամենաս, բայց արա այն, ինչ կամենանք: Հասկացա՞ր, ծակ նավթաման…

– Տեր իմ, ես էլ մուկ եմ, սխալվելու իրավունք ունեմ… Ես սխալմամբ օգտվեցի իմ սխալվելու իրավունքից… Ընտանյոք մեղք ենք…

– Ներում եմ: Խլրտում չլինի: Մեր խաղաղ կումը չմուռտառեք… Ասեք, ձեր մեջ կա՞ մեկը, որ չի ուզում արդար վաստակել… (մեռելային լռություն): Չհասկացա, դուք չեք ուզում վաստակե՞լ…

Ամեն անկյունից. – Ուզում ենք… Ուզում ենք… Բայց արդար վաստակել չենք ուզում:

– Կեցցեք: Հիմա գանք ընդիմությանը: Մեր ձեռքբերումներն էդ յոնջեքի աչքը խոթեք: Արդյունաբերության արդյունքից խոսիր, Զնջիլ Վաղո…

– Ի՞նչ ասեմ, էդպիսի արդյունք մենք էլ չէինք սպասում: Ճգնաժամը ապացուցեց, որ արդյունաբերությունը արդյունք չի տալիս…

– Դե, դե, անտերի անունը չտաք… Թող մեր մասին չիմանա: Թե չէ, մեկ էլ տեսար, մեր ազիզ հողն էլ մտավ, հարամեց… Հանգիստ աբրում ենք… Արտահանումը ո՞նց է… Օրհներգիր, Ալաբաշ:

– Ավելի լավ չի եղել: Հին ազգություն ենք, մեզ նեղություն չենք տալիս, բերում ենք՝ էստեղ տեղավորում...(ցույց է տալիս փորը):

– Ապրես: Բերքուբարիքը ո՞նց է, Բարիքի Քցիպ քեդխուդա…

– Գերգերազանց: Գյուղացիք հերոսաբար դաշտուլայգի չմտան, բերքատվությունը եռակի-քառակի աճեց...

– Իմանանք՝ Ինչի՞ բերքատվությունը, ադա...

– Փշի, տատասկի և զանազան նման քոլերի...

– Թող բնությունից Զարզանդը խոսի: Ադա, հեքիաթ չպատմես, դրանք թոռներիս որ պատմում եմ, լացները գալիս է: Մեր ազիզ Բնությունը ո՞նց եք պահպանում...

– Էն էլ ո՜նց: Հսկա պարիսպներից ներս բետոնի տակ հուսալի պահպանում ենք:

– Ասում են՝ հիվանդանոցները, դեղուդարմանը թանկացրել եք, հա՞, Դարման Պաքո…

– Թանկացրել ենք, որովհետու հասարակ մկների առողջությունը թանկ է մեզ համար…

– Հանցագործության ասպարեզում առաջընթաց կա՞, ինչու՞ չես խոսում, Արդարության Նժար քեդխուդա:

– Կա: Հանցագործությունների թիվը կայուն առաջընթացի մեջ է: Աբրում ենք:

– Դատավոր Բդոն ապրած կենա, արդարությա՞մբ եք դատում:

– Արդարորեն անխտիր բոլորին դատում ենք:

– Լսել եմ՝ ջուրն ու կոյուղին իրար են խառնվում, հա՞, Ջրի-կեղտի քեդխուդա…

– Ես ջրի-կեղտի քեդխուդան եմ: Միասին ենք, չէ՞…Դրա համար էլ ջուրն ու կեղտը իրար պիտի խառնվեն…

– Գրագիր, հրամանք՝ ջուր կեղտից առանձնացնել ու երկուսն էլ տալ սրան… Թող կառավարի: Լսիր, այ պատի տակ պպզած քեդխուդա: էդ ինչի՞ չես զեկուցում, Գերագույնի հրամանը կատարեցի՞ր:

– Ը, ը: Ը, ը… Գերագույնը հրամայել է պալատը պաժառից, երկրաշարժից ստրախովկա անեմ: Պալատը հաջող կրակին կտանք, կվառենք, բայց ժաժք... մեր ձեռքին չէ՝ ոչ մի կերպ չենք կարող...

– Չգիտեմ, մինչ Գերագույնի գալը հազիր ըլի… Գերագույնի կենացը... Խազնապետ, խազնից զեկուցի:

– Խազնեն լիքն ա... Պատերը ճաք են տալիս:

– Էլի լցրեք, որ ժողովրդիս պահենք... Թե չէ խեղճ ժողովուրդը համ իր գլուխը պիտի պահի, համ՝ մեր...

– Էլ հնար չկա, Տեր իմ: Էն օրը մի 50 գործարար են եկել, ղանչաք են անում, թե՝ թույլ տվեք գոնե մեկ ամսով արձակուրդ գնանք:

– Բայց գործարարները հո ձեր նոքարները չե՞ն...

– Ես էլ էդ եմ ասում, բայց բողոքում են՝ «Բա ինչու՞ ենք մենք միայն ձեզ համար աշխատում…»:

– Դիվանբաշունի քեդխուդա, Մկան տարին ո՞նց պահենք:

– Կաշառենք:

– Ու՞մ :

– Փող լինի, կաշառվողն ինքը կհայտնվի: …

– Ժողովուրդից հանենք:

– Ժողովուրդն իսկի իրա դատավորին կաշառելու փող չունի: Մեր աշխատավարձերը բարձրացնելուց առաջ այդ մասին չմտածեցինք... Ես ասում եմ՝ ժամացույցները կանգնեցնենք:

– Լավ ասիր՝ մենք ճառ ասող ենք, զանգ կախող չենք: Էդ մասին վաղուցվանից է գրված…

Այս պահին աղմուկ է լսվում: Սենեկապետը ներս է մտնում, զեկուցում՝ Ընդդիմադիր գործիչներ են, ասում են՝ բան ունենք ասելու…

– Էդ հարվածային գործիքներին ներս թողեք (Ներս են մտնում):

– Գյադեք, ո՞ր թայֆից եք…

– Ես՝ Ձախ ձեռքով դամ պահողների ասոցիացիայից եմ, ընկերը՝ Յաթրջին խիարի թթվով խմողների համքարությունից:

– Դե, հիմի տեսնենք՝ ի՞նչ եք ածելու…

– Տեր իմ, խորհուրդներս արժեքավոր է շա՜տ…

– Արժեքը… Լավ, դու ԴՀՈԼանդիայում դհոլ կածես, գյադա, դու էլ լրիվ ես կեղտի մեջ, կեղտի քեդխուդա կլինես…

– Հոժար ենք, հոժա՜ար ենք… Ուզում եք Մկան տարին չանցնի՞…

– Էդ ենք ի կատար ածում…

– Է, թող անցնի: Թող նորը գա: Նորը Ցուլը չի՞… Ցուլ եղել եք, ցուլ կաք: Ձեր գործը կթելն է: Կթվող հա կճարվի…

Ամեն կողմից. – Էդպես է, կճարվի… Դրուստ որ՝ դրուստ ա ասում… Վերջապես գլխացավանքից կազատվենք: Ադա, կենացդ… Գերագույնի կենացը… Գալդ բարի, Ցուլի նոր տարի…..

***Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆ***

*Սիրված արվեստագետներ*

# ԱՐԹՈՒՐ ՄԵՍՉՅԱՆ

## «Տարօրինակ մարդ արարած...»




**Դու քո մեջ էիր առել երաժշտության մարմինը, որ հայի ձև ուներ, ու վեր-վեր-տրոփով-ցավով-հավատքով երկինք էիր հանում...**

Բազմահազար երկրպագուներ հիացել են նրա դյութիչ ու հմայիչ ձայնով, («հազար փակված դռներ կբանա ու կգոհացնի...») ժամանակակից երկրպագուների համար նրա անունը լեգենդ է դարձել, նրան միայն ձայնագրություններով գիտեն ու հաղորդումներով:

60-70-ականների պատանիներն ու պարմանուհիները նրան ավելի լավ գիտեն, քանզի Արթուր (Արտաշես) Մեսչյանի անվան հետ է կապված մի ամբողջ ժամանակաշրջան:

«Առաքյալները» (Մեսչյանը, որ հոգևոր ղեկավարն էր պոլիտեխնիկականի շինարարական ֆակուլտետում կազմակերպված այդ համույթի, ստեղծագործական մեծ վերելք ապրեց) կրթեց և դաստիարակեց մի ամբողջ սերունդ:

«Անկախություն» թերթի կարծիքով՝ «Հանդուգն երիտասարդների մի խումբ մարտահրավերի ձեռնոց նետեց կարծրացած պատկերացումների տեր հասարակության ներկայացուցիչներին»:

Մեսչյանի երգերում հայ հոգին գտավ իրեն, տեսավ իրեն, ճանաչեց իրեն ու հզորացավ: Նրա ոգեղենության հանգով այս երկիրը ֆիլտրվեց, եկեղեցիների չարած գործը եկավ հանգավ նրա կիթառին ու շարակնոցի ոգեղենությունը պատեց այս հայրենիքը:

Գրիգոր Նարեկացու «Մատյանի» ազդեցության ներքո նա դիմեց առ Աստված իր հորինած «Ո՞ւր էիր Աստված» երգով, որը ժողովրդական դարձավ, հատկապես մեծ տարածում ունեցավ երիտասարդության շրջանում, շուրթից շուրթ անցավ Սփյուռքում, համարում բերեց նրա հեղինակին և կատարողին:

Բազմաշնորհ է, երգահան ու երաժիշտ, բանաստեղծ ու վիպագիր, ճարտարապետ ու ճարտասան:

«Մասնագիտական գործունեության» մեջ երևի մեծ էր եղել հոր՝ ճանաչված գիտնական, Հայաստանի Ազգային կաճառի մեխանիկայի գիտահետազատական ինստիտուտի գիտական լաբորատորիայի ղեկավար, դոկտոր, պրոֆեսոր Ստեփան Մեսչյանի ազդեցությունը:

Ավարտելով պոլիտեխնիկականի ճարտարապետականը՝ «Երևանշին» տրեստի նախագծողների հետ «Զվարթնոց» օդանավակայանի նախագծման համար արժանացել է պետական մրցանակի, բյուրականի պիոներական ճամբարի նախագծի համար՝ «տարվա լավագույն ստեղծագործության համար» դափնուն:



Երևանում կազմակերպված երիտասարդ ճարտարապետների արվեստանոցի ամենաերիտասարդ տնօրենն էր:

Մշակել և իրականացրել է Լազարյան ճեմարանի վերկառուցման աշխատանքները: Մատենադարանի նոր մասնաշենքի, կառավարական հյուրանոցային համախմբի նախագծողն է, մայրաքաղաքի Հյուսիսային պողոտայի հատակագծի ստեղծողը:

«Երաժշտական գործունեությունը» առաջնորդել, ուղղություն տվել ու ոգեշնչել է մայրը՝ Ջուլիետա Աթոյանցը:

Արտաշեսը ավարտել է Ալեքսանդր Սպանդարյանի անվան վարժանոցի ջութակի բաժինը, երգել ազգային օպերայի մանկական երգչախմբում: Առաջին անգամ 10 տարեկանում բարձրացել է բեմ և երգել Չայկովսկու «Պիկովայա դամա» օպերայում: Հետո ձեռքն առել հայրիկի նվիրած կիթառն ու կատարել տարբեր ազգերի ռոմանսներ: Այդ օրվանից հայրական նվերը դարձել է երաժիշտի անբաժանելի ուղեկիցը, հարազատ ընկերն ու բարեկամը, իղձերի ու ապագա ակնկալիքների յուրովի ուղեկիցն ու արտահայտիչը:

Պավել Ուստինովի «Հեքիաթ» ներկայացման երաժշտության հեղինակն է, Արամ Սաթյանի հետ համատեղ՝ «Հայկական աչքեր» փաստավավերագրական կինոնկարի երաժշտության հեղինակը: Նկարահանվել է Ռուբեն Գևորգյանի «Գիշերվա մեջ առկայծող կրակ» կինոնկարում՝ կերտելով բոցաշունչ Նալբանդյանի կերպարը, ստեղծել է երաժշտությունը, կատարել երգերը: Բագրատ Հովհաննեսյանի «Ամեն ինչ կրկնվում է» ֆիլմում նկարահանվել է Իրինա Ալֆյորովայի հետ: Արարել է Մուշեղ Իշխանի «Կիլիկիո-արքան» բեմադրության երաժշտությունը:

Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգեն Առաջինի հովանավորությամբ ու ջանքերով յոթանասունականների կեսերին ստեղծված «Ռեքվիեմ-1915»-ը բազմացվեց, հանձնվեց միջազգային հասարակության դատին:

Երաժշտական այդ նորարարությունը մեր հայ իրականության մեջ, մեր ժամանակակիցը գնում լցվում է սինֆոնիկի մեջ ու դառնում դարի ոգու իրական ձայնը:

Այդ տարիներին նա Սփյուռքին ներկայացրեց բանաստեղծ և ճանաչված գործիչ Մուշեղ Իշխանի խոսքերով գրված և իր կողմից նոտագրված երգերի շարքը՝ ստեղծելով մեծածավալ երաժշտություն տարբեր գործիքների և մենակատարների համար, ինչեց հեռուստատեսությամբ, դասվեց դասական երաժշտության շարքը:

«Ռեքֆիեմը» ամբողջությամբ Հայաստանում կատարվեց 1975 թ-ի ապրիլին Վազգեն Առաջինի Վեհարանի դահլիճում, հյուրերի և հոծ բազմության առջև: Նվագախումբը ղեկավարում, ջութակի, կիթառի և դաշնամուրի պարտիաները կատարում և երգում էր ինքը՝ Արթուր Մեսչյանը:

Արթուր Մեսչյանին այս կերպ մեծարելու պատճառը նրա ապրած տարիների մեջ չէ: Ապրած տարիների խորհուրդն է մեծ, նրա գործի բարոյական արդյունքը, նրա ստեղծագործական տեսակարար կշիռը, այն մեծ ավանդը, որ ներդրել ու ներդնում է հայ ճարտարապետության և երգարվեստի մեջ:

Նա անմիջական ժառանգն ու շառավիղն է այն զարմանալի մարդկանց, որոնք իրենց անձն ու մարմինը մոռացած, միայն հոգուն են ապավինում:

***

Զարմանում եմ....
Երբ ազգիս տառապանքը մորմոք
Թատրոն են դարձնում,
Ձեռքեր համբուրում ինքնակոչ
հավատացյալի,
Վաճառքի հանում ամեն մի արժեք
առանց ամոթի:

***

Սերն է միակ տերն ու արքան,
Մնացածը ունայնություն,
Նա է իմաստն այս կյանքի,
Որ մեկ անգամ է շնորհվում,
Օրերը նենգ, օրերը բութ,
Օրերը ստոր և անիծված
Եվ սառույցե այս ամրոցում
Նրա կրակը չի մարած:

էջը կազմեցին՝
*Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*
և Լոռու մարզային գրադարանի գլխավոր մատենագետ
*Նաիրա ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*

*Անուշադրության մատնված պատմական արժեքներ*

# Բերքաբերի պատմաազգագրական թանգարան

### *Ժողովուրդ ենք, որ սիրում ենք մեր չունեցածը, չենք փայփայում այն, ինչ ունենք*

Համայնք, ազգ, թե պետություն իրենց պատմությամբ են համայնք, ազգ, պետություն, իսկ թանգարաններն էլ այդ պատմության վկայագրերն են:

Պատմության օրերն անհամար են, օր-օրի հիշողությունը դժվարանում է փրկել անցյալը: Հիշողությունները չեն կարող ապրել առանց մշտակայանների՝ թանգարանների:

Եվ ամեն պահի պետք է արժևորել նրանց գոյությունը, քանզի պատմությունը քարոզչական հզոր զենք է, ազգային ինքնագիտակցության, արժեքների գնահատման միջոց:

Նախնիների պատմությունն էլ կորստի չմատնելու անհրաժեշտությունը, պատմամշակութային հարուստ ժառանգությունը պահպանելու նպատակամղվածությունը ոգեշնչեցին Նորայր Արզումանյանին 1956 թվականին Իջևանի շրջանի Ադրբեջանին սահմանամերձ Բերքաբեր համայնքում հիմնելու պատմաազգագրական թանգարանը, որտեղ պահվում են գյուղից և նրա շրջակայքից ձեռք բերված մշակութային արժեքավոր գտածոներ:

Թանգարանում ցուցադրվում են բրոնզեդարյա ժամանակներից մինչև մեր օրերը հասած պատմական արժեքներ ներկայացնող 7500 օրինակ նմուշներ, առավելապես՝ խեցեգործական աշխատանքներ: Հետաքրքրություն է ներկայացնում հատկապես 1 տ տարողությամբ կարասը, որը հնագույն ժամանակներից հասնելով մեզ, պահպանել է իր ապրանքային տեսքը (ի դեպ գտածոն ունի իր ուսանելի պատմությունը):

Թանգարանի հետաքրքիր ցուցանմուշներից է նաև յուղով լիքը կճուճը, որ հանվել է 7 մ խորությամբ հողային շերտից: Մեկ այլ սափորում պահպանվել է հազարամյակների վաղեմությամբ կորեկը: Արժեքավոր է IV դարից մեզ հասած կնոջ ապարանջանը:

Եվ ինչում համոզված է վաստակաշատ մտավորականը. ***«Այստեղ գտնվող պատմական փաստերի գրառումները ցանկացած գիտնականի հնարավորություն կտան պաշտպանելու գիտությունների դոկտորի աստիճան»:***

Թանգարանում իրենց տեղն են գտել տարբեր ազգերի մեծերի կենսագրություններ, այդ թվում՝ ադրբեջանցի բանաստեղծ Վագիֆինը:

***«Տարիներ առաջ սահմանամերձ Բերքաբերում հանդիպում էր հայ և ադրբեջանցի լրագրողների միջև, և վերջիններս զարմանք հայտնեցին նման բարեկիրթ փաստի առթիվ, խոստովանելով, որ իրենց մոտ այլ կերպ կվարվեին: Ասել է՝ կոչնչացնեին հայեցի ամեն ինչ»,*** - հիշում է Նորայր Արզումանյանը:

Նման պատմական արժեքներ ներկայացնող թանգարանի ճակատագրով որևէ պետական ատյան մտահոգվո՞ւմ է արդյոք:

Ինչպես երևում է թանգարանի պայմանների անմխիթար վիճակից՝ ոչ, քանզի միակ սրտացավ մարդու՝ Նորայր Արզումանյանի խոսքերը հենց այդ են վկայում.

***«Ինքս եմ մաքրում փոշիները, կատարում թե՛ հավաքարարի, թե՛ վերանորոգողի, թե՛ տնօրենի պարտականությունները: Ես այդ աշխատանքներից չեմ խորշում, չեմ ամաչում, թող ամաչողները ամաչեն: Պարտավոր եմ պահպանել մեզ հասած արժեքները: Միգուցե ուշացած նկատեն, գնահատեն մեզ հաջորդող սերունդները»:***

Պատմական շատ աղավաղումների, անարդարությունների համար մեղավորներ ենք փնտրում ամբողջ աշխարհում, պատմագիտական դաստիրակչության պակասի առաջ անզորանում ենք, ոչինչ չենք անում մեր պատմությունը ամբողջապես հասկանալու ու քարոզելու համար, դրա մեջ մոռանալով մեղադրել նաև ինքներս մեզ: Մեղավոր ենք այդպիսի անտարբերության, անուշադրության ու վերաբերմունքի համար: Եվ մեղավոր լինելու սաղմը պետք է փնտրել ոչ թե խեղճ ու կրակ ժողովրդի, այլ նրան ղեկավարողների մեջ:

Թանգարանները սոսկ հին իրերի պահպանման վայր չեն, այստեղ իմի է բերված պատմություն, որ արժանի չէ անտարբերության: Պարզապես համապատասխան պետական մարմինները (Մշակույթի նախարարություն, մարզի, շրջանի համապատասխան մարմիններ) պետք է արթնանան իրենց թմբիրից և փորձեն փրկել բնօրրանից գտնված հոգևոր հարստությունները ու դրանք պահ տան եկող սերունդներին, ինչպես 1965-ից առ այսօր առանց ավելորդ շեփորելու արել ու անում է Նորայր Արզումանյանը:

*ԼևոՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

# Դարերով միասին

Հայ-ռուս բարեկամությունը կոփվել է դարերի ընթացքում, ամրապնդվելով ու հզորանալով հասել է մեր օրերը: Այդ բարեկամության ցայտուն օրինակն է Լոռու մարզի Ֆիոլետովո և Լերմոնտովո գյուղերի ու Մարգահովիտ գյուղի բարիդրացիական ջերմ հարաբերությունը:

Պատմական էքսկուրս կատարենք ռուս աղանդավորների՝ մոլոկանների, մեր տարածաշրջանում հայտնվելուն: Մոլոկանների կրոնական աղանդը Ռուսաստանում սկիզբ է առել 18-րդ դարի երկրորդ կեսին Տամբովի նահանգում: Մոլոկան անվանումը կապվում է ավետարանական «հոգևոր կաթի» (**словесное молоко**)՝ իրենց քարոզած Հիսուս Քրիստոսի ճշմարիտ ուսմունքի հետ: Պետրոս առաքյալի 1-ին թղթի, 2-րդ գլխի, 2-րդ պարբերությունում գրված է. «Նորածին մանուկների պես բանական ու անխարդախ **կաթին** փափագեցեք, որպեսզի նրանով մեծանաք (մինչև փրկություն)»: Մոլոկանությունը սոցիալական բողոքի կրոնական ձև էր ընդդեմ ճորտատիրության և եկեղեցու: Կարելի է զուգահեռներ անցկացնել 8-9-րդ դդ. Հայաստանում լայն ծավալում ստացած Պավլիկյան շարժման կամ 9-12-րդ դդ. Թոնդրակյան շարժման հետ: Իշխանությունն ու եկեղեցին հալածել են մոլոկաններին, ինչը հանգեցրել է 18-րդ դարի վերջին նրանց զանգվածային վերաբնակեցմանը Անդրկովկասում և երկրի այլ շրջաններում: 1835 թ. Նիկոլայ 1-ին ցարը հրամայեց հաշվառել Տամբովի նահանգի մոլոկանների ղեկավարներին, որպեսզի ոստիկանության խիստ հսկողության ներքո նրանց աքսորեն Անդրկովկաս: 1840 թ. Տամբովի նահանգի Մարշանսկ գավառի Ալգասովո գյուղից Անդրկովկաս աքսորվեցին աղանդավոր-մոլոկանների 57 ընտանիքներ, ովքեր այժմյան Մարգահովիտ գյուղից արևելք, հիմնադրեցին Նիկիտինո գյուղը, ի պատիվ նրանց ուղեկցող գնդապետ Նիկիտինի: Համարյա նույն ժամանակահատվածում Սարատովի նահանգից աքսորվածները Մարգահովիտից արևմուտք հիմնադրում են Վոսկրեսենկա գյուղը: Գյուղեր հիմնելու տեղերը մատնանշվել են նախկինում գոյություն ունեցած զինվորական հսկիչ անցակետերի զինվորական աստիճանավորների հրահանգով: 1851 թ. Երևանի նահանգի Ալեքսանդրապոլի գավառի Նիկիտինո գյուղում բնակվում էին 57 ընտանիք՝ 389 բնակչով, իսկ Վոսկրեսենկայում՝ 63 ընտանիք, 484 բնակչով: Գյուղերը ապրում էին պարզ համայնքների սկզբունքով: 1881-84 թթ. միավորվում են, գոյակցելով որպես խառը համայնք: 1895-96 թթ. Նիկիտինոն և Վոսկրեսենկան միավորվում են հարևան Բոզիքենդի (Մարգահովիտ) համայնքի հետ, դառնալով Բոզիքենդ համայնքի ենթակայության գյուղեր: Այդպես եղավ նաև 1915 թ., երբ 149 ծխից բաղկացած Նիկիտինոն և 144 ծխից բաղկացած Վոսկրեսենկան միավորվեցին 383 ծխից բաղկացած Համզաչիմանի (Մարգահովիտ) հետ: Սակայն ինչպես 1895-96 թթ., 1915 թ. միավորումը ևս ռուսների դժգոհությունների ու բողոքների պատճառը դարձավ և այդ միավորումը երկար չգոյատևեց: 3 գյուղերի միջև հարաբերությունները սրվում էին միայն հողային հարցերում, մնացած պարագաներում մարդիկ ապրում էին հաշտ ու խաղաղ: Տեղական խնդիրները լուծվում էին գյուղական ժողով-հավաքներում, որոնք տեղի էին ունե-

➲21

*Մեր հրաշամանուկները*

# Ջութակահարուհին

**Մասնագետները վկայում են՝ երաժշտարվեստի երկնակամարում Լոռիում նոր աստղ է փայլփլում: Վանաձորցի 13-ամյա ջութակահարուհի Նաիրա Գրիգորյանն իր բարձրարվեստ կատարումներով զարմացնում, զմայլում, գերում է դասական երաժշտության սիրահարներին: Նրա հաջողություններին ավելի հաճախակի են անդրադառնում մարզային լրատվամիջոցները: Նրան հրաշամանուկ են անվանում: Շիկահեր աղջնակին ջերմությամբ, հոգատարությամբ են շրջապատել ոչ միայն ամեն զոհողության պատրաստ ծնողները, այլև ուսուցիչները, արվեստի մարդիկ, քաղաքային և մարզային իշխանության ներկայացուցիչները: Համոզված են, Նաիրան մեծ ճանապարհի է անցնելու:**



Երգ-երաժշտությունն ընկալելու շնորհը նրան ի վերուստ է տրված: Համենայնդեպս, ինչպես դաշնակահար ծնողներ Կարեն և Գայանե Գրիգորյաններն են վկայում, երկու տարեկանում արդեն իրենց համար ամեն ինչ գրեթե պարզ էր. մանչուկն անձանձիր, ժամերով լսում էր երաժշտություն, դուր եկած մեղեդիները անսխալ վերարտադրում էր դաշնամուրի վրա: Առանձնակի ուշադրությամբ էր լսում ջութակից հնչող երաժշտությունը: Եվ քանի որ ջութակ դեռ չուներ, երկու փայտերի միջոցով փորձում էր կրկնել լսածը: Երեք տարեկանում առաջին «մենահամերգը» տվեց իր հաճախած մսուր-մանկապարտեզում: Ներկաները հասկացան՝ շիկահեր աղջնակի մեջ ինչ-որ անսովոր հուր կա: Չորս տարեկանում համաքաղաքային ասմունքի, երգի փառատոնում հաջողությամբ նվագակցեց մորը, արժանացավ առաջին գովասանագրին: Չորս տարեկան էր, երբ ծնողները նրան տարան Վանաձորի թիվ 5 երաժշտական դպրոցի դաշնամուրի բաժին: Սովորում էր, բայց ուշքումիտքը ջութակն էր: Կարճ ժամանակ անց թոթովախոս երեխան մեծավարի հայտարարեց՝ ես ջութակ եմ ուզում: Տեղափոխեցին Ս. Թավրիզյանի անվան երաժշտական ուսումնարան: Լարային բաժնում նրա ուսուցիչը վաստակաշատ մանկավարժ, երաժիշտ Սպարտակ Զամվելյանն էր: Հմուտ այգեպանը շուտ նկատեց խոստումնալից պտուղը, առավել ուշադիր եղավ: Այդուհետ հաջողությունները երաշխավորված էին: Մարզային «Ոսկե կարապ» մրցույթներին մի քանի տարի նվաճեց առաջին մրցանակները, դափնիները: Էմին Խաչատրյանի անվան պատանի երաժիշտ կատարողների հանրապետական երկրորդ մրցույթ-փառատոնին Լոռու մարզի միակ ներկայացուցիչն էր: Տարիքային իր խմբում (7-9 տ.) արժանացավ հատուկ մրցանակի, հաջորդ տարի, Ալ. Սպենդիարյանի անվան մրցույթ-փառատոնում, ուր մասնակցում էին երկրի տարբեր մարզերի 450 պատանի երաժիշտ-կատարողներ, հաղթողների շարքում դարձյալ առաջինն էր: Վանաձորում անցկացված կոմպոզիտոր Էդուարդ Կզարթմյանի անվան մրցույթում ժյուրին դարձյալ գլխավոր մրցանակը նրան հանձնեց, բայց նաև ափսոսանքով արձանագրեց՝ շնորհաշատ ջութակահարուհու տաղանդի արտահայտմանը վատ հնչողությամբ խոչընդոտում է գործարանային արտադրության ոչ որակյալ գործիքը: Հոգատար մարդիկ կան: Վանաձորի ավագանին նիստերից մեկում անդրադարձավ հարցին, գումար հատկացրեց, որով աղջնակը համեմատաբար որակյալ (այսօր դա էլ չի բավարարում), ջութակագործ վարպետ Մարտին Երիցյանի պատրաստած ջութակն ունեցավ: Նաիրային նաև ամենամսյա նպաստ հատկացվեց: Ոգևորված, իր ու ջութակի ուժերին վստահ՝ նա սկսեց հանդես գալ մենահամերգներով՝ Վանաձորյան տարբեր բեմերում, Դիլիջանում, Ստեփանավանում, նպատակադրվել է նաև մայրաքաղաքում: Ծափողջույններն ավելի են ամրապնդում հավատը սեփական կարողությունների նկատմամբ: Այս տարի տարբեր խմբերի կազմում հյուրախաղերով հանդես է եկել ԱՄՆ-ում, Կանադայում, իսկ ՀՀ մշակույթի նախարարության պատվիրակության կազմում վերջերս Մինսկում մասնակցեց «Դելփյան խաղեր» կոչվող երիտասարդական 5-րդ մրցույթին, ուր և պրեֆեսիոնալ կատարումների համար արժանացավ դիպլոմի, մասնակցության հավաստագրի: Նաիրային այս տարի ջերմորեն ընդունեցին նաև Ֆրանսիայի Բանյո քաղաքում, ուր Բանյո-Վանաձոր քույր-քաղաքների հոբելյանական միջոցառումների առիթով հյուրնկալվեց, ելույթներ ունեցավ ու գերեց ֆրանսիացի ու հայ ունկնդիրին: Համերգներից մեկում շիկահեր հրաշամանուկի նվագից հուզվեց լոռեցի հայտնի բանաստեղծ Ռազմիկ Պողոսյանն ու հենց դահլիճում մի էքսպրոմտ գրեց.

**Գնամ, հավաքեմ մի խտիտ քամի**<br>
**Եվ աշնանային ջութակի մի լար-**<br>
**Գորովանքներով տանեմ աղջկան**<br>
**Իր այնքան սիրած թախծանվագի**<br>
**Հնչապնակում պահելու համար... /հատված/**

Նաիրան այսօր էլ« հուսալի ձեռքերում» է. սովորում է Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան երաժշտական տասնամյակի 9-րդ



դասարանում: Կատարելագործման գործընթացը գլխավորում է ՀՀ վաստակավոր արտիստ, պրոֆեսոր, «Կոմիտաս» լարային քառյակի առաջին ջութակ Էդվարդ Թադևոսյանը: Վանաձորի թիվ 20 հանրակրթական դպրոցում էլ Նաիրան բացարձակ գերազանցիկ է: Բայց նա մի մեծ ու նվիրական երազանք ունի՝ ապրել քարաշեն, ամուր ու հարմարավետ տանը, ուր ստեղծագործելու լիարժեք պայմաններ կան: Վագոն-տնակը, որ ծնողներն ստացել են աղետից հետո, և ուր ծնվել ու մեծացել են ինքն ու դարձյալ դաշնակահար եղբայրը, այլևս անհարմար, անհրապույր է հենց միայն ապրելու համար:

*Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆ*<br>
*Լուսանկարը՝ Էմիլ ՅԱՎՐՅԱՆԻ*

*Արևոտ ստվերով նկարիչը*

# Խաչիկ Ղարաբեկյանի հիշատակին

Կյանքի 69-րդ տարում վերջերս իր մահկանացուն կնքեց ճանաչված գեղանկարիչ Խաչիկ Ղարաբեկյանը: Թերլեմեզյանի անվան գեղարվեստի ուսումնարանն ավարտելուց հետո նա աշխատել է Վանաձորի նկարչական դպրոցում, այնուհետև` Հովհաննես Աբելյանի անվան դրամատիկական թատրոնում` որպես գլխավոր նկարիչ: Նա նոր տարրեր ներմուծեց բեմադրական նկարչության մեջ և զգալի դերակատարում ունեցավ Աբելյանի անվան թատրոնի դերն ու հեղինակությունը բարձրացնելու գործում: Ինչպես ժամանակակիցներն են փաստում, դերասաններն իրենց ազատ ու անկաշկանդ էին զգում նրա ձևավորած բեմերում: Սակայն վարպետն ինքն սկսում է զգալ, որ բեմի հետ աշխատանքի արդյունքում իր կտավներում մեծանում է դեկորի դերը` ի հաշիվ գեղանկարչության: Եվ այդ շեղումից դուրս գալու համար նա գիտակցում է կենդանի բնության հետ շփվելու կարևորությունը և առանձնատունարվեստանոց է կառուցում Անիձորում` Հրանտ Մաթևոսյանի ծննդավայրում, գրողի տան դիմաց: Լոռվա բնաշխարհի հետ սերտ շփումից վերածնվեց գեղանկարիչ Խաչիկ Ղարաբեկյանը: Անիձորի բնաշխարհը նոր խոսք ասաց գեղագետի աշխարհընկալման մեջ: Նա միայն իր ներկապնակին բնորոշ երանգներով գովերգեց Լոռվա բնաշխարհը, իսկ Մաթևոսյանի Անիձորը ներկայացրեց իրեն բնորոշ խոհափիլիսոփայական հանդարտությամբ:



Խաչիկ Ղարաբեկյանը անհատական ցուցահանդեսներ է ունեցել հայրենիքում և եվրոպական շատ երկրներում: 2007-ին Վանաձորի Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու ցուցասրահում ներկայացվեց նրա անհատական ցուցահանդեսը` 70 աշխատանքներով: Նույն թվականին կազմակերպվեց նաև Հրանտ Մաթևոսյանի 70-ամյակին նվիրված ցուցահանդես` երեք լոռեցի նկարիչների` Հրանտ Թադևոսյանի, Նիկոլ Աղաբաբյանի և Խաչիկ Ղարաբեկյանի ստեղծագործությունների ներկայացմամբ: Ղարաբեկյանի կերտած սրբապատկերներն են զարդարում Վանաձոր և Սպիտակ քաղաքների եկեղեցիները:

Վարպետի ստեղծագործությունների վերջին ցուցահանդեսը կայացավ այս տարի, որը կրեց «Ինքնադիմանկար» խորագիրը և նկարիչն արժանացավ ՀՀ մշակույթի նախարարության ոսկե մեդալի: Այս ստեղծագործությունների մասին դրամատուրգ, երգիծաբան, լրագրող Սամվել Խալաթյանն այսպես է արտահայտվում. «Պատահական չէ, որ հեղինակը խուսափել է դրանք հին ու ծեծված «Ինքնադիմանկար» բառով անվանել, այլ վերնագրել է «Նոյ», «Առաքելը», «Նկարիչը», «Դավիթ-Բեկ» և այլն: Չնայած եթե անգամ դրանք անվերնագիր լինեն և դիտենք այդ գործերը որպես արվեստագետի մտքի, ճաշակի և տաղանդի արգասիք, մեր դեմ հառնում են անհատապես տարբերվող անկրկնելի կերպարներ` իրենց կենսագրությամբ, խոհափիլիսոփայությամբ, հոգեբանությամբ ու կենսափորձով: Ինքնադիմանկարներում Խաչիկ Ղարաբեկյանը երկակի արտիստ է. մեկը` դիմանկարից հառնող կերպարի բուն ինքնությամբ, մյուսը` նկարիչ-գեղագետի երևակայության ու ստեղծագործական տաղանդի դրսևորումով»: Գեղանկարիչ, Վանաձորի կերպարվեստի թանգարանի տնօրեն Փափագ Ալոյանը վերջերս կայացած զրույցում ասաց. «Ղարաբեկյանն այն արվեստագետներից է, որոնք մեր քաղաքում ստեղծեցին գեղանկարչական դպրոց և դեմք, ինչը չկար 30 տարի առաջ: Նա բնավորությամբ հանգիստ, մեղմ, ոչ կոնֆլիկտային մարդ էր, անգամ նրա ստվերի մեջ արև կար: Նրա աշխատասիրությանը նախանձում էինք շատերս: Իր այդ հատկանիշներով ու ավյունով նա դեռ երկար ապրելու իրավունք ուներ, դրանից միայն կշահեր հայ գեղանկարչությունը»:

***Նաիրա ՎԱՆՅԱՆ***

---

# *Մեզ հետ չէ մեր վարպետը*

***Խաղաղություն Խաչիկ Ղարաբեկյանի հոգուն և մխիթարություն նրա ընտանիքին:***

**«Ինչպես որ ապրած լի ու վաստակած օրն է անխռով քուն պարգևում, այնպես էլ ազնվաբար ապրած կյանքն է պարգևում հանգիստ մահ»:**
*Լեոնարդո Դա Վինչի*

***«Գործարար» ամսագրի ստեղծագործական խումբն էլ միանալով սփյուռքում ապրող մեր բազմահազար հայրենակիցներին, խոր կսկիծով սգում է սիրելի վարպետի` Խաչիկ Ղարաբեկյանի կորստյան առթիվ:***



**Հովհաննես Կարապետյան** լրագրողը իրեն ի վերուստ սահմանված ժամկետը, Աստծո պարգևած կյանքն ուղղորդել ու իմաստավորել է արժանավայել հարաբերվելու իր ժողովրդին՝ իր գրիչով դառնալով նրանց հուսադրող ու գոտեպնդող բարեկամը:

Ամբողջության մեջ ոչ միայն ներկայացնում է սեփական ժողովրդին, այլ անհատ լինելով՝ հենց նույն այդ ժողովրդի զավակն է ամբողջության մեջ:

Իր բացառիկ համեստության ու նրբանկատության շնորհիվ հանրաճանաչությունը նրան չի գցել եսասիրության ու փառամոլության հորձանուտը, և ճշմարիտ լրագրողին վայել տասնամյակներ շարունակ ապրում ու անվրդով արարում է:

*Հովհաննես ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

# ԺԱՄԱՆԱԿԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

## (Իրապատում)

Ստվերները սեղմվել, փոքրացել էին: Օդը դարձել էր դոնդողանման, ու նրանից ասես ծուլություն էր ծորում: Սովորականի նման փողոցում թափառելը հաճելի մի բան չէր: Ձանձրույթից, տապից փրկվելու ելքը քաղաքային այգին էր:

Այգի տանող երեք ճանապարհի կար: Բայց քանի որ շոգը սաստիկ էր, ընտրեցի ամենակարճը, որ անցնում էր եկեղեցու մոտով: Բարձր լորենու տակ, նստարանին, չորս ծերունիներ էին: Տեղավորվել էին կողք կողքի, ինչպես ծիծեռնակները՝ չվելուց առաջ:

Ծիծեռնակները՝ չվելուց առաջ...

- Նրանց չուն հեռու մի երկիր է, - մտածեցի, - ուր մեզ համար անծանոթ մի կյանք կա: Իսկ այս մարդիկ, ու չգիտես ով ինչ կյանք է ապրել, ուր որ է նույնպես բռնելու են հեռուն տանող ճամփան: Եվ այդ ճանապարհի վերջում՝ անհայտությունն է: Ծերունիներին կապողն այլևս ոչ թե ներկա, այլ մի ուրիշ, օտար աշխարհ էր:

*Իմ սիրտը բաժանվել էր երկու մասի, մեկը սիրում է քեզ, իսկ մյուսը՝ ուրիշի...*

Մոտակա սրճարանից սրտաճմլիկ երգը բռնել էր շրջապատը:

- Խելք ու սիրտ խառնել է իրար:

Սերն ու երգն էլ իմաստ պիտի ունենան, իսկական անմտություն է, - երգչի հասցեին փնթփնթաց գավազանին հենված ծերունին: Մարդ պիտի ոչ թե սրտով, այլ իմաստությամբ ապրի, եթե չի ուզում սխալվել...

- Ա՛յ Գևո, սխալվել-չսխալվելու մեր ժամանակներն անցել են, - հոգոց հանեց ծղոտե գլխարկով ծերունին: Ի՞նչ իմանաս, թե ամեն մի բացվող օր ում ինչ անակնկալ է պատրաստում:

- Անակնկալս ո՞րն է, - չհամբերեց առաջինը, որին Գևո էին կոչում: - Բա չգիտե՞ս, թե վաղը մեզ ինչ է սպասում:

- Ի՞նչ իմանամ...

- Մութն ու խավարը՝ մեզ անկողին ու վերմակ:

Մի պահ ճնշող լռություն իջավ:

- Խաղաղությամբ պիտի պառկեմ ու քնեմ, - անդորրը խախտեց և խոսակցությանը խառնվեց երրորդը, որն առանձնանում էր հագած-կապածով: Ես միշտ աղոթել, հավատացել եմ Տիրոջը, ու վստահ եմ, որ նա ինձ պահապան է: Մեկ էլ՝ շիրիմս արդեն պատրաստ է՝ մեր գյուղի գերեզմանատան բարձունքին՝ Արևո՜տ, հարմա՜ր...

- Իմ շիրիմն էլ է պատրաստ, - չխեղճացավ գավազանով ծերունին: Մի հինգ տարի կլինի:

Ջահելներին ինչի՞ նեղություն տամ: Հանգիստ խղճով կգնամ... Երկրի խորությունը չափելու...

- Ավելի լավ էր իսկի չծնվեինք, - վերջապես խոսեց չորրորդը, որը երևի թե ամենատարեցն էր: Բայց թե կա՞ մեկը, որ չի ծնվել: Իսկ թե ծնվել ենք, լավ է ապրենք: Ապրենք, ու խորություն չափելու փոխարեն երկնքի բարձրությունը չափենք: Թե չէ անանձրև ամպի նման մռայլվել ու թնկթնկում եք: Էն աշխարհի դռները միշտ բաց են ու բաց: Մահվան քունը ո՞ր մեկից է փախել...

Նա մի տեսակ ներողամիտ նայեց հարևաններին ու շարունակեց.

- Հիմա ուշադիր լսեք, թե ինչպես է պատահում, երբ մարդը փորձում է խուսափել մահվան ճիրաններից: Մի երեսուն տարի առաջ էր: Մայրս զանգեց Իջևանից, թե՝ ա՛յ Գրիգոր, մի օր հարմարացրու արի, ախր Վաղոն՝ հերդ, ձեռից գնում է: Արի, տեսնենք ինչ ճար ենք անում:

Հերս էլ՝ ի՞նչ, ամեն կիրակի առավոտ տնից դուրս է գալիս ու մեկ էլ հայտնվում ուշ կեսօրին՝ հարբած, օրորվելով, և անընդհատ անկապ քրթմնջում սատանաներից, դժոխքից:

Ո՞ւմ մոտ էր գնում, ինչի՞: Գաղտնիքը պարզելու համար որոշեցի հետևել:

Տնից դուրս եկավ մի տեսակ ծածուկ, մի տեսակ՝ գողունի. չլինի՞ թե մեկը տեսնի-իմանա: Ու բռնեց գերեզմանատուն տանող ճամփան: Շիրմաքարերը՝ կողք կողքի, թփեր, առատ խոտ, աննկատ մնալը դժվար մի բան չէր: Մոտեցավ պապական գերեզմանին, մի փոքր շունչ առավ, ու քիչ անց լսեցի նրա տխուր շշուկը. «Ախր դեռ ապրելու տեղ ունեիր: Էդ ո՞ւր վռազեցիր-գնացիր՝ ա՛յ Վաղո: Է՛հ, ինչ ասեմ, հանգստություն ոսկորներիդ»: Ասաց ու բաժակը դատարկեց: Հետո, տեսնում եմ, առաջին բաժակին հետևեցին երկրորդը, երրորդը... Ու ամեն մի բաժակի հետ՝ ողորմի է տալիս ինքն իր՝ Վաղոյի հոգուն:

- Ես ի՞նչ ես անում, ա՛յ հեր, - զգույշ մոտեցա՝ ձեռքս դրի ուսին:

Թեթևակի ցնցվեց:

- Ես ի՞նչ իմանամ, - փորձեց հայացքը փախցնել:

Հետո թե՝ Գաբրիել հրեշտակապետին եմ խաբում, - շշնջաց:

Ընկերներս՝ Սիմոնն էր, Օսեփն էր, Մինասն էր, Ակոփն էր... որի՞ն ասեմ, բոլորը հրաժեշտ են տվել-գնացել: Մնացել եմ մենակ: Մի օր մտածեցի՝ կարող ա՞ հոգեառները ինձ էլ, տեղս էլ մոռացել են: Ու էսպես՝ մին-մին շշկլացնում եմ՝ իբր... ապրողների մեջ այլևս չկամ...

Մտա սրճարան: Երևի սովորականից երկար նստեցի մի բաժակ սուրճի, դրա մրուրի մեջ որոնելու-գտնելու կյանքի ու մահվան առեղծվածը: Ապարդյուն: Երբ դուրս եկա, ստվերներն արդեն երկարել էին: Ծերունիների նստարանին երիտասարդ մի զույգ էր ժամանակից դուրս, ժամանակի խորհրդին անտարբեր...

# Օծվեց Տաշիրի տարածաշրջանի Լեռնահովիտ գյուղի Սուրբ Սարգիս մատուռը





Նոյեմբերի 18-ին, հանդիսապետությամբ Գուգարաց թեմի առաջնորդ տեր Սեպուհ եպիսկոպոս Չուլջյանի, կատարվեց Տաշիրի տարածաշրջանի Լեռնահովիտ գյուղի Սուրբ Սարգիս մատուռի Սուրբ Սեղանի և Մկրտության ավազանի օծման արարողությունը (նոյեմբերի 10-ին, ձեռամբ Սրբազան հոր, արդեն օծվել էր մատուռի գմբեթի խաչը):

Մատուռը կառուցվել է գյուղին կից, ժողովրդի կողմից սիրված Կարճաղոշ բլրի վրա՝ բարերարությամբ Վահե Կարապետյանի: Օծման արարողության ավարտին Սեպուհ Սրբազանն իր օրհնության ու շնորհավորական խոսքն ուղղեց բոլոր ներկաներին. «Գոհություն ենք հայտնում Բարձրյալն Աստծուն, որ մեզ պարգևում է խաղաղ կյանքն՝ ստեղծագործելու և կառուցելու համար նորանոր սրբավայրեր ու



կատարելու բազում այլ Աստվածահաճո գործեր: Անկասկած այս սրբավայրն այսուհետ կծառայի ձեր սրտաբուխ աղոթքները երկինք բարձրացնելու և միաբանվելու մեր Մայր եկեղեցու անսասանության, մեր անկախ հայրենիքի բարգավաճման ու հայ ժողովրդի բարօրության համար»:

Արարողությանը մասնակցում էին Տաշիրի տարածաշրջանի հոգևոր հովիվ տեր Զարեհ վարդապետ Կաբաղյանը, Ստեփանավանի տարածաշրջանի հոգևոր հովիվ տեր Վռամ աբեղա Ղազարյանը, բարերարի գերդաստանը, գյուղի և մերձակա տարածքի հավատացյալներ: Արարողության ավարտին Սրբազանն օրհնեց բարերար Վահե Կարապետյանին ու նրա ընտանիքին և շնորհակալություն հայտնեց Աստվածահաճո աղոթավայրի կառուցման համար: Ապա Կարապետյան գերդաստանի կողմից ներկաներին մատուցվեց երախտիքի ու գոհության մատաղ:

***Սեփական լրատվություն***
***Լուսանկարները՝ Արմեն ՌԱՖԱՅԵԼՅԱՆԻ***

# «ՄԵԾ Է ՁՈՒԼՄԱՆ ՎՏԱՆԳԸ»

## Պայքար ինքնության պահպանման համար

Լիլիթ Իսոյանը Կազանում է ապրում արդեն 11 տարի: Ընտանիքով տեղափոխվել էին, երբ 6 տարեկան էր: Հայրը ԽՍՀՄ տարիներին այստեղ էր բանակ ծառայել, հետո էլ ավարտել համալսարանը և աշխատանքի անցել Կազանում: Մայրը Հաղպատի բնակիչ էր: Մինչև Ռուսաստան տեղափոխվելը տարվա մի մասն ապրում էին Հաղպատում, մյուսը՝ Կազանում: Դպրոցը Լիլիթն ավարտել է Կազանում, այժմ էլ սովորում է Կազանի պետական տնտեսաֆինանսական ինստիտուտում, նույն այն հաստատությունում, ուր ժամանակին հայրն էր ուսանել: «Առաջին կուրսում եմ սովորում, և ողջ ինստիտուտում միակ հայ ուսանողն եմ», ասում է Լիլիթը:

Հայերեն Լիլիթը լավ է խոսում, գրել կամ կարդալ դժվարանում է: Արձակուրդները Հայաստանում է անցկացնում, սակայն հայրենիքում հաստատվելու մասին ընտանիքում դեռևս չեն մտածում: «Հայաստանը շատ եմ սիրում, անհամբեր սպասում եմ ամռանը, որ գամ: Ավարտելուց հետո շատ եմ ուզում Երևանում ապրել, բայց չգիտեմ, թե ինչպես կստացվի», պատմում է Լիլիթը:

«Մեծ է ձուլման վտանգը: Կազանում ներկայումս 4000 հայ է ապրում, ողջ Թաթարստանում՝ շուրջ 15.000», ասում է Թաթարստանի հայ համայնքի ղեկավար Միխայիլ Խաչատուրյանը: Ներգաղթողների առաջին մեծ հոսքը 1988 թվականից հետո էր: Համայնքային առաջին կազմակերպությունը, որը կրում էր «Լույս» անվանումը, հիմնադրվել է 1994 թվականին: Հետագայում այդ կառույցը վերափոխվել է և կատարելագործվել՝ դառնալով Ռուսաստանի հայերի միության մասնիկը: Գործում է նաև հայկական կիրակնօրյա դպրոց:

Թաթարստանի ազգությունների ասամբլեայի շենքը քաղաքի կենտրոնում է: Այստեղ են հավաքվում և իրենց ծրագրերը քննարկում 42 ազգությունների ներկայացուցիչներ: Թաթարստանում ապրում է մոտ 115 ազգության ներկայացուցիչներ, ակտիվ համայնքային կյանք քչերն են վարում: «2008-ի նոյեմբեր և դեկտեմբեր ամիսներին Կազանում հայկական մշակույթի օրեր էին: Հաճախ ենք կազմակերպում ցուցահանդեսներ և համերգներ ոչ միայն Կազանում, այլև մյուս մեծ քաղաքներում», նշում է Միխայիլ Խաչատուրյանը:

Վաչագան Իսոյանն ընտանիքի հետ հաճախ չի գնում համերգների կամ ցուցահանդեսների: «Ցանկությունը մեծ է, ժամանակ չկա», ասում է: Աշխատանքի է գնում առավոտյան ժամը 6-ին, վերադառնում ուշ երեկոյան: Առևտրով է զբաղվում, օրվա խնդիրները լուծելուց հետո միայն հանգստանալու ժամանակ է մնում:

Կազանում հայկական եկեղեցի չկա: Հայերը տեղի ռուսական ուղղափառ եկեղեցին են գնում, հաճախ այնտեղ էլ ամուսնանում: Եղել

➲ 14

## ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ (1885-1920)

**Հայ մեծագույն պոետ: Ծնվել է Ջավախքի Գանձա գյուղում: Մահացել է Օրենբուրգում, դին ամփոփված է Երևանի Կոմիտասի անվան պանթեոնում:**

**Ստացել է բազմակողմանի և բարձրագույն կրթություն: Համոզված լինելով, որ անհրաժեշտ է «ձուլել մեր կյանքը համամարդկային կյանքի հոսանքին՝ պահպանելով մեր հոգեկան առանձնահատուկ գծերն ու գույները», Տերյանը կոչել է կեղծ ավանդապահությունից հրաժարման, արժեքների վերագնահատման: Եզակի իրողություն են հայ իրականության համար նրա «Հայ գրականության գալիք օրը» և «Հոգևոր Հայաստան» հրապարակախոսական երկերը, որոնք այսօր էլ առավել քան արդիական են:**



# ՀՈԳԵՎՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ

## Ա

Հայաստանի վիճակն այսօր զբաղեցնում է ոչ միայն հայերին, այլև օտարներին: Հայկական հարցը նորից վիճաբանությունների առարկա է դարձել, նորից ամբողջապես կլանել է հայ հասարակության բոլոր խավերի լարված ուշադրությունը, միևնույն ժամանակ քննության առարկա է դարձել օտար, մանավանդ ռուս մամուլի մեջ: Ամեն մի հայ ներկա տագնապալի ու աղետավոր ժամին բնականաբար ջանում է թափանցել մշուշոտ ու անհայտ ապագայի խորքը՝ իր հիվանդագին տարակուսանքների լուծումը որոնելով: Այո՛, հիվանդագին են այդ մտորումները, պետք է խոստովանել, չնայած ընդհանուր ոգևորությանը: Հայության համար չափազանց կարևոր, կյանքի և մահու խնդրի բնավորություն ստացած այդ տարաբախտ հարցն իրերի ներկա դասավորությամբ դրված է հրապարակի վրա իր ամբողջ ծանրությամբ՝ անթիվ հույսերի, ցնորքների, մտահոգությունների, գուշակությունների և դատողությունների ժխոր ստեղծելով:

Բավական է թռուցիկ մի ակնարկ նետել մեր ազգի մերձակա պատմության վրա, որպեսզի համոզվես, թե որքա՜ն կարևոր ու վճռական դեր է հատկացրել մեր մտավորականությունն այդ չարաբախտ խնդրին: Բավական է թերթել մեր գրականության լավագույն ներկայացուցիչների երկերը՝ համոզվելու համար, թե ինչ նշանակություն է ստացել այդ հարցը մեր կյանքում, որպիսի անմոռանալի ոգևորությունների, զոհաբերումների, որպիսի ծանր հիասթափումների ու լքումի աղբյուր է եղել մեր ոչ միայն մտավորականության, այլ նաև ժողովրդի ամենալայն խավերի համար: Արդեն թվում է, որ եթե անգամ այդ Հայաստան կոչված դժբախտ երկրում ոչ մի հայ չմնա, մենք դարձյալ պիտի այրվենք նույն իղձերով, նույն ցավագին, մեզ համար մի տեսակ կրոնական գունավորում ստացած այդ խնդրով:

Այդ հարցի այս կամ այն լուծման ծանր տարակուսանքներով և ոսկե երազներով սերունդներ են կրթվել, այդ հարցի շուրջը պտտվող գրականությամբ սնվել են սերունդներ: Հայության համար մի ցավոտ ցնորք է դարձել այդ «Հայաստանը», մի ավետյաց երկիր, դյութական մի անուն:

Բնական է դրա համար, որ մենք անկարող ենք այդ խնդրի մասին սառնասիրտ խոսել, հանգիստ մտածել: Ավելին կասեմ, մեզ մի տեսակ սրբապղծություն է թվում, երբ մարդիկ մեր ազգի՝ տարիներով ու տասնյակ տարիներով փայփայած գաղափարին մոտենում են սառը մտքով, անտարբեր գիտնականի ոճով: Մենք ուզում ենք ճչալ, որովհետև երբ ցավ ես զգում, խոհեմ լինել չես ուզում. մենք ուզում ենք աղաղակել, որովհետև երբ սիրելին տանջվում է, խոհեմությա ն խորհուրդներն անզոր են, իսկ այդ աղաղակի ապարդյուն լինելու մասին չենք մտածում: Օտարներն անգամ վարակվել են հաճախ և վարակվում են մեր օրերում մեր այդ հիվանդագին զգացումներով և սառը դատողի և տրամաբանորեն մտածողի փոխարեն՝ դառնում են մասնակից այդ տարերային բաղձանքներին:

Թվում է, թե ո՛չ դիվանագիտական խունճուճ հարաբերությունները, ո՛չ տնտեսական-հասարակական անսասան օրենքները, ո՛չ բնական անկարելիությունը չեն կարող դեմ կանգնել այդ միահոգի, միահամուռ ու բորբոքուն տենչանքին, այդ տարերային հեղեղի բնույթ կրող, ճակատագրական դրոշմով կնքված ընթացքին:

Այդ հոսանքի լոզունգը բացարձակ ու վճռական է, նրա դրոշակի վրա գրված է՝ «դեպի Հայաստան»:

Ինչպես էլ լինի, ինչ գնով էլ լինի, ինչ հետևանք էլ ունենա՝ միևնույն է - «դեպի Հայաստան»: «Հայաստանը պետք է ազատվի». անդրդվելի մի պնդում է սա, որի հանդեպ ոչ մի ուժ չի կարող կանգնել, որին ոչ մի արգելք չի կարող կասեցնել:

Եվ հասկանալի է դա:

Չէ՞ որ ամեն մի հայ մտավորականի, ոչ միայն մտավորականի, այլև ամեն մի հայ մարդու համար այդ հարցը սրբազան մի ավանդ է դարձել, նվիրական մի տվայտանք, ամեն մի հայ մարդու առջև ծառացել է իր եղերական, արյունաներկ պատկերով:

Մի՞թե կարող ենք սառնասիրտ լինել մենք, երբ այժմ դրված է այդ հարցը, երբ կանգնած ենք նրա այս կամ այն լուծման հանդեպ:

Մի՞թե իրավունք ունենք մենք տարակուսելու կամ տատանվելու. պետք է հավատալ, պետք է հուսալ լիասիրտ, պետք է տենչալ սրտի բոլոր զորությամբ և մեր բոլոր կարողությամբ ձգտել, որ այժմ վերջնական կերպով լուծվի այդ արյունլվիկ հարցը:

Սակայն դրանով չի վերջանում մեր անելիքը. դա միայն նախադուռն է մեր ապագա հայրենաշեն, ազգակառույց գործի...

## Բ

Մեր մտավորականության մեջ մի խոշոր ու այժմ իշխող հոսանք մշակել է մի տեսակետ, ըստ որի թուրքահայ խնդրի լուծման հետ է կապված հայության ամբողջ ապագայի հարցը: Ճիշտ է՝ կան որոշ վերապահումներ, սակայն ներկա դեպքում նրանք կարևոր չեն, էական դեր չեն կատարում:

Այդ հասարակական հոսանքի թեորիան գրեթե համատարած ու իշխող է հանդիսանում մեր երկրում. այդպես է եղել գրեթե միշտ, չնայած արտաքին խանգարիչ զորություններին, չնայած ներքին՝ մեր երկրում ծագած հակամարտ հասարակական հոսանքներին: Այդ ուղղությունը այսպես թե այնպես գրավել է մեր ոչ միայն միջին հասարակական խավերի համակրությունը, այլև ներքին՝ ժողովրդական, դեմոկրատ դասերի համակրությունն ու գործակցությունը: Ներկա դեպքում ինձ հետաքրքրողն այդ ուղղության թեորիաների մանրամասները չեն, ոչ էլ նրանց մտածողության ամբողջական կոնցեպցիան: Ինձ զբաղեցնողն այժմ միայն մի հիմնական կետ է, որ շատ կարևոր դեր է կատարում նրանց ամբողջ հասարակական աշխարհայացքի նկատմամբ: Հայություն և Հայաստան ասելով՝ այդ ուղղության ներկայացուցիչները գրեթե միշտ թուրքահայությունն են ըմբռնում և Թուրքաց Հայաստանը:

Մտածողության այդ ձևը շատ բնորոշ արտահայտություն էր գտել դեռ անցյալ տարի կարդացված մի դասախոսության մեջ, որ վերաբերում էր հայ գրականությանը, և մի այլ դասախոսության մեջ, որ վերաբերում էր հայ կուլտուրայի ապագային: Այդտեղ շատ պարզ ցոլանում էր այն գերագույն հավատը, որ տածում էին դասախոսները դեպի թուրքահայերի կուլտուրական վճռական դերը հայության կյանքում: Հայության գլխավոր կուլտուրական կենտրոնը ներկայանում է, ըստ այդ տեսակետի, Էրզրումը, Վանը, Մուշը, մի խոսքով՝ Թուրքաց Հայաստանի կենտրոնները:

Ընդհանուր առմամբ՝ դասախոսները լավատեսությամբ էին տոգորված հայության կուլտուրական ապագայի վերաբերմամբ: Սակայն, երբ ես կարդացի լրագրում այդ դասախոսությունների բովանդակությունը, չտոգորվեցի նույն լավատեսությամբ, որովհետև նրանց լավատեսությունը հիմնված էր

թուրքահայ խնդրի լուծման վրա և այն հավատի վրա, որ տածում էին նրանք դեպի թուրքահայերի կուլտուրական ապագան, մինչդեռ ինձ զբաղեցնում էր **ամբողջ հայության** կուլտուրական ապագայի խնդիրը:

Մինչդեռ ինձ համար միանգամայն անընդունելի էր այդ կոնցեպցիան՝ ոչ միայն իբրև մտածողություն, այլև իբրև զգացողություն: Բայց դա կարևոր չէ, որովհետև ուղիղ թե սխալ՝ վերը հիշածս իդեոլոգիայի ներկայացուցիչներն այնուամենայնիվ ունեին իրենց առջև մի ուղեցույց աստղ՝ հայության ապագան, որ ինձ համար էլ կենսական ու կարևոր, այժմեական ու հրատապ էր թվում, ինչպես թվում է և այժմ: Դրա համար ես հասկանում եմ, երբ այդ ուղղության մարդիկ զայրույթ են զգում կարդալով այն հոդվածները, որոնց հեղինակները մտահոգվում են թուրքահայերի և առհասարակ հայերի **ֆիզիկական** գոյությունը ապահովելու մասին: Ո՛չ, ասում են նրանք, հարցը հայության ֆիզիկականի մասին չէ, այլ նրա ամբողջ ապագայի, նրա կուլտուրական ստացվածքների, նրա հոգեկան ինքնության մասին: Պետք է միջանկյալ նկատել, որ հայ ժողովրդի ֆիզիկական ապահովության մասին խոսողները, իհարկե, պակաս չեն շահագրգռված հայության կուլտուրական և հոգեկան ստացվածքների վերաբերմամբ, միայն այս անգամ ևս տարբերությունն այլ տեղ պետք է որոնել: Բանն այն է, որ ֆիզիկականի մասին մտահոգվողներն այնպիսի գերագույն ու վճռական հույսեր չունեն ներկայիս հայության ապագայի նկատմամբ, ինչ հույսեր անտարակույս տածում են նրանք, որոնք ամբողջ հայության ապագայի հարցը կապում են թուրքահայերի հետ:

Չընծայելով թուրքահայությանն այդպիսի վճռական դեր, այնուամենայնիվ, բնականաբար, ամեն մի հայ պիտի շահագրգռված լինի թուրքահայերի ազատագրումով, ինչ ձևով էլ լինի այդ ազատագրումը: Ուրեմն պարզ է, որ հակադրություն չկա այստեղ, այլ ընդհակառակը՝ համադրություն կա, քանի որ ֆիզիկականի մասին հոգացողները ևս հայության ապագայի խնդրով են զբաղված: Ուրեմն էական խնդիրը մեկ է՝ հայության կուլտուրայի ապագայի ապահովումը: Վերը հիշածս ուղղության մարդիկ ազգի այդ կուլտուրական ապագայի հարցի լուծումը որոնում են թուրքահայկական հարցի լուծման սահմաններում:

## Գ.

Սակայն կա մի ավելի տարօրինակ թյուրիմացություն: Դա հայ բուրժուազիայի և մանավանդ բուրժուական ինտելիգենցիայի բռնած դիրքն է: Այսպես թե այնպես՝ վերը հիշածս ուղղության իդեոլոգները (որոնց օտար չեն որոշ դեմոկրատական սկզբունքներ ու համակրություններ) հանուն ազգային ապագայի ուզում են հայության ճակատագիրը միանգամից լուծել, մի հարվածով կտրել այդ գորդյան հանգույցը, մի հերոսական ճիգով վերջ դնել ծանր ու տարտամ վիճակին. հայ բուրժուական ինտելիգենցիան, ինչպես և հայ բուրժուազիան չգիտես՝ ի՛նչ են կամենում:

Ազգային ինտելիգենցիան պարզ կերպով առաջադրել է ազգային կուլտուրական ապագայի հեռանկարը: Բուրժուական ինտելիգենցիան, որ սովորաբար հարում է քաղաքական լիբերալ ուղղություններին, այս դեպքում մի տարօրինակ համերաշխություն է ցույց տալիս ազգային մտավորականներին: Այն ազգայիններին, որոնցից դեռ երեկ այնպիսի ահաբեկ սրտով ու անկեղծ ոգևորությամբ հրաժարվում էր: Այժմ մի զարմանալի մետամորֆոզ է կատարվել: Ես ասացի, որ ազգային ինտելիգենցիան ունի իր որոշ հեռանկարը, որոշ նպատակը (որի ներքին պարունակությունը գուցե և պարզ չի պատկերացնում). իսկ ի՞նչ նպատակով, ի՞նչ հեռանկարով է ղեկավարվում հայ բուրժուական ինտելիգենցիան:

Ի՞նչ է կամենում նա «Հայաստան» ասելով: Ի՞նչ է նշանակում այդ բառը նրա շուրթերին:

Եթե ենթադրելու լինենք նույն «ազգի կուլտուրական ապագան», պետք է ենթադրենք այդ բուրժուական ինտելիգենցիայի մեջ որոշ ազգային կուլտուրական գունավորում, ազգային կուլտուրական որոշ գաղափարներ, որոշ ձգտում, մինչդեռ ամենից առաջ և վճռական կերպով փաստերը ժխտում են մի այսպիսի ազգային ոգու գոյությունը մեր բուրժուական ինտելիգենցիայի ծոցում:

Ընդհակառակը, ինչպես հայ բուրժուազիան, այնպես և նրան մշտապես հարազատ, ավելի լավ է ասել՝ հոգեհարազատ հայազգի ինտելիգենցիան իր ամենախոշոր ու ամենագործոն մասով ապազգայնացած է:

Դա մի անժխտելի փաստ է:

Նրա՝ **այդ** ինտելիգենցիայի համար բնավ գոյություն չունի հայ կուլտուրա ասածը: Նա միանգամայն անտեղյակ է այդ կուլտուրայի գլխավոր գործոններին - լեզվին, գրականությանը, արվեստին - այն ամենին, ինչ մի ազգի կուլտուրան բնորոշող հատկանիշներն են կազմում:

Նա ոչ միայն անտեղյակ է, այլ **կամք** անգամ չունի տեղյակ լինելու, ավելին կասեմ, **արհամարհում է** այդ ամենը:

Ամեն անգամ, երբ դրա և նման հարցերի մասին խոսք է բացվում, մեր ինտելիգենցիայի որոշ մասը մատնանիշ է անում այն, որ մենք «փոքր ազգ ենք», երևի ենթադրելով, որ բոլոր «փոքր» ազգերի ինտելիգենցիան այդպես կլինի... Սակայն, իհարկե, դա սխալ է:

Ո՛չ լեհ, ո՛չ ֆինն, ո՛չ մալոռուս, ո՛չ նույնիսկ վրացի ինտելիգենցիան այդպես չէ:

Ուրեմն ի՞նչ է այդ բուրժուական, ապազգայնացած ինտելիգենցիայի բաղձանքը Հայաստանի վերաբերմամբ:

Դեռ սրանից մի երկու տարի առաջ ես մի անգամ զրույց ունեցա մի այդպիսի հայ ինտելիգենտի հետ (թեպետ դեռ ոչ բոլորովին ապազգայնացած, սակայն այն ինտելիգենտներից մեկի, որոնք ոչ մի արժեք չեն տալիս ազգային կուլտուրային):

Երբ ես հարցրի նրան, թե ի՞նչ է վերջապես նրա բաղձանքը, ինչո՞ւ է այդպես ջերմ ցանկանում, որ «Հայաստանն ազատվի» (Բալկանյան պատերազմի սկզբին էր տեղի ունենում զրույցը), վերջապես՝ մի՞թե, հարցրի ես, ձեր բաղձանքն այն է, որ տեսնեք հայ ոստիկան հայկական համազգեստով... նա անհամբեր կերպով և կտրուկ ասաց.

- Այո՛, հայ ոստիկան, հայկական համազգեստով...

Հետո ավելացրեց դրա վրա և այն ամենը, ինչ անհրաժեշտ կերպով կապված է այդ հայ ոստիկանի գոյության հետ...

Սակայն ես ոչ մի խոսք չլսեցի հայ կուլտուրայի մասին. հայ արվեստի, գրականության, հայ գիտության... վերջապես հայ ժողովրդի մասին, որի համար (նկատենք թռուցիկ կերպով գոնե) բոլորովին միևնույն է, թե ո՛ր ազգից է և ի՛նչ համազգեստ ունի հագին այն ոստիկանը, որն իրենից կաշառք է պահանջում կամ որն իրեն ծեծում է...

Այսպես ահա, այդ հայ բուրժուական ինտելիգենցիան, որ ժխտում է մեր ժողովրդի լեզուն, որ արհամարհում է մեր գրականությունն ու մամուլը (ամենաեռանդուն կերպով ձգտելով ավելի ու ավելի ցած գցել նրանց ու փոխարինել մի այլ մամուլով, որի համար ոչ մի միջոց չի խնայում), ահա այդ ինտելիգենցիան այսօր տոգորվել է մի անասելի ոգևորությամբ, մի չտեսնված ազգասիրությամբ: Նա ևս իր լոզունգը դարձրել է «Հայաստանը»...

Եվ այդ մարդիկ այսօր ամենից բարձր են ճչում Հայաստանի մասին՝ միևնույն ժամանակ ինքնակոչ կերպով ստանձնելով ազգի ներկայացուցչության իրավունքը:

Նրանք են, որ պիտի հայության պաշտպան կանգնեն, հայության բերանը լինեն:

Ստացվում է մի սքանչելի պատկեր. հայության բերանը հայերեն չի խոսում, հայության շուրթերը հայերեն բառեր չեն կարող արտասանել:

Հնարավո՞ր է մի այդպիսի պատկեր այլ «փոքր» ազգերի մեջ. հնարավո՞ր է, որ մի լեհ ինտելիգենտ կամ բուրժուա, մանավանդ լեհ ազգի ներկայացուցիչ լինելու հավակնություն ունեցող մի բուրժուա, ինտելիգենտ, իշխան՝ լեհերեն չիմանա:

Ինչպե՞ս, մի Վիլեզոլսկի կամ մի Զամոյսկի չիմանա լեհերե՞ն, մի Դմովսկի կամ Պատոցկի չիմանա Լեհաստանի հեռավոր և մերձակա պատմությու՞նը, նրա գրականությու՞նը, չսիրի նրա նկարչությու՞նը, երաժշտությու՞նը, թատրո՞նը, այն հոգևոր երկերը, որ կենդանություն են տալիս մարմնավոր, նյութական Լեհաստանին:

Ո՛չ, այդպիսի բան չի կարող պատահել երբեք, դա անհնար է որևէ լեհի համար:

Լեհի համար չեն կարող գոյություն ունենալ արգելքներ ու խոչընդոտներ՝ իր լեզուն, իր հայրենիքը, իր հոգևոր հայրենիքը ճանաչելու ցանկության հանդեպ:

Ասում եմ այդ նրա համար, որ մեզանում շարունակ այդ երգն են երգում... Պայմաննե՞ր... Ներեցե՛ք, նույն պայմանները չեն խանգարում ահա լեհերին ու մալոռուսներին իրենց լեզուն, իրենց գրականությունը, իրենց պատմությունն ու իրենց արվեստը սիրելու և ճանաչելու:

Սրանից մի քանի տարի առաջ իմ ընկերներից մեկը պատմում էր, որ մի լեհ ուսանող մաթեմատիկոս քննություններին պատրաստվում էր լեհական դասագրքերով: Դա Մոսկվայում էր, Մոսկվայի համալսարանի ուսանող էր լեհը:

Կասեք՝ ուրեմն կան լեհերեն դասագրքեր և, ըստ երևույթին, ավելի լավ դասագրքեր (այդպես էր վկայում և այն լեհ ուսանողը), որ գերադասվում են ռուսականներին:

Այո, բայց այդ դասագրքերն էլ ստեղծել է նույն լեհը... չնայած «պայմաններին», որոնց վրա միշտ մատնանիշ են անում մեր ազգային բուրժուաներն ու բուրժուական ինտելիգենտները: Իհարկե, երբ ասում եմ ճանաչել, գիտենալ, սիրել մայրենի գրականությունը, արվեստը, լեզուն, դա չի նշանակում **գոհանալ** նրա ներկա դրությամբ, այլ հենց ընդհակառակը. եթե լիներ այդ սերը, նրա ներկան այդքան ողորմելի չէր լինի և ապագան՝ այդքա՜ն անհույս ու անհավատալի:

Մեզանում շարունակ մատնանիշ են անում գրականության, արվեստի, մամուլի, դպրոցի անկյալ վիճակը և դրանով արդարացնում իրենց անտարբերությունը դեպի այդ ամենը:

Զարմանալի բան. ի՞նչ եք տվել, պետք է հարցնել այսօրվա այդ բուրժուա-ինտելիգենտ ազգասեր դարձած հայերին, ի՞նչ եք տվել և ի՞նչ եք պահանջում: Երբ մի հայ մարդ կամենում է ռուսերեն թերթ հրատարակել, նա շատ պարզ գիտակցում է, որ դրա համար հարկավոր է հարյուր հազարների գումար,

իսկ երբ նույն մարդը կամենում է բարերարել հայ թերթը, նա մեծահոգորեն նվիրում է հինգ-տասը հազար և իսկույն պահանջ դնում, որ այդ թերթը հավասար լինի ռուս թերթերին:

Ահա այդ հայ բուրժուա-ինտելիգենտն ամեն անգամ, երբ խոսք է բացվում գրականության մասին, աչքերը հյուսիս է դարձնում. այնտե՜ղ, տեսնու՞մ եք, գրականություն կա, որովհետև մեծ ազգ է, գրքերը տարածվում են, գրականությունը օգտավետ, շահավետ զբաղմունք է…

Այլ կերպ չի կարող դատել նա, ում համար ամենից համոզեցուցիչ փաստը ոսկու շլացնող փայլն է…

Մինչդեռ նա կարող է իմանալ նախ, որ ռուս գրականությունը դիվիդենտներից չէ՝ որ ծաղկել է, որ ռուս գրականությունը, արվեստը **սիրող հասարակություն կա,** շատ սակավաթիվ, այո, **շատ սակավաթիվ,** որովհետև այն գրողները, որոնց մասին լսել է հայ բուրժուա-ինտելիգենտը, բացառություն են կազմում, և եթե նրանց գրական գործունեությունը շահավետ է նրանց համար, դա դեռ չի նշանակում, որ **բոլոր** ռուս գրողները, կամ լավագույն ռուս գրողները միշտ ոսկու փայլով շլացած են ստեղծագործում… Մի Տյուտչև, մի Դոստոևսկի պիտի տասնյակ տարիներ սպասեին, որպեսզի նրանց գնահատեր հասարակությունը: Ուրեմն Տյուտչևը վա՞տ գրող է: Ուրեմն, եթե Տյուտչևի գրքերը չէին տարածվում (իրավ, այդպես էլ էր, և է այժմ էլ), նա հարկավոր չէ՞ր ռուս գրականությանը…

Այսպիսի մի դատողություն անհնար է, անըմբռնելի է եվրոպացի, ռուս, լեհ ինտելիգենտի համար:

Ահա այսօր այդ մարդիկ խոսում են «Հայաստանի» մասին:

Բայց դեռ մինչև օրս չի հավաքված այն չնչին գումարը, որով պիտի կանգնեցնեին Խ. Աբովյանի արձանը Երևանում: Մի՞թե Արարատյան դաշտը Հայաստան չէ, և նրա ոգին՝ Աբովյանը, այդ Հայաստանի ամենալուսեղեն մի բեկորը չէ: Որպիսի՞ Հայաստան եք ուզում կառուցել դուք, որ չեք ուզում ճանաչել այդ հոգեղեն Հայաստանը:

Ի՞նչ եք որոնում դուք Հայաստանում, եթե արհամարհում եք այն, ինչ հոգին և սիրտն է նրա…

Ինչպե՞ս հավատամ ես ձեր այդ հանկարծակի, դյութական մի գավազանի շարժումով ծնված ազգասիրությանը:

Դուք, որ ինքնակոչ հյուրեր եք այսօրվա արյունալի հանդեսում, մի՞թե չեք զգում ձեր դրության տարօրինակությունը, անհարմարությունը:

Դուք, որ հարսանյաց հյուր եք միշտ և երբեք ազնիվ աշխատանքի և սրտակեղեք ցավի հետ լինել չկամեցաք մեզանում:

Դուք, որ ժառանգ եք դարձել մեր հայրենիքի և երբեք չեք գնահատել նրա հոգեղեն ավանդը: Բայց կանցնի այս արյունալի հանդեսը, որի մեջ դուք ինքնակամ և ինքնակոչ թամադա եք դարձել, և կգա նորից տաժանելի ու չարքաշ աշխատանքի առօրեականը, և դուք, եկվորներ, նորից կփախչեք այնտեղ, ուր ձեր որկորն ավելի կուշտ է, ուր ձեր որջն՝ ավելի տաք…

Մինչև անգամ այսօրվա ձեր արածների համար դուք պատասխանատվությունը կնետեք նույն ձեր այսօր այդքա՜ն սիրեցյալ հայրենիքի չարքաշ ու դժբախտ, քաղցած ու հուսախաբ զավակների վրա…

Եվ դարձյալ Հայրենիքի, Հոգևոր Հայաստանի կառուցման ծանր ու վշտալի, բայց ազնիվ աշխատանքը կվերցնեն իրենց վրա նրանք, ում դուք չեք ճանաչել երբեք, չեք ուզում ճանաչել այսօր և չեք կամենա ճանաչել առավել ևս վաղը: Անուններ տալու կարիք չկա, ձեր սրտին ոչինչ չեն ասի այդ անունները:

Իսկ ձեր անուննե՞րը: Դա էլ կարևոր չէ, մանավանդ որ Nomina odiosa sunt! (անուններն ատելի, անցանկալի են - խմբ.):



## Դ.

Իսկ ինչ վերաբերում է այն ազգային ինտելիգենտին, որին զայրացրել է հայ ժողովրդի ֆիզիկական գոյության վրա մտածողների մտորումը, մենք կարծում ենք այժմ նրա համար պարզ պիտի լինի, որ մենք մտահոգվում ենք այդ ֆիզիկական գոյության մասին ոչ լոկ մարդասիրական զգացմունքներից դրդված, այլև որոշ ազգային տեսակետ ունենալով: **Մենք չէինք կամենա, որ մեր ժողովուրդը ոտնատակ գնար այս շփոթ օրերում, որ նա զոհ լիներ սխալ գաղափարախոսության, սխալ ըմբռնված ազգային իդեալի և վերջը հուսահատության ու հիասթափության գիրկն ընկներ:**

Մենք թերահավատ ենք դեպի այդ՝ մի հարվածով, մի թեկուզ հերոսական ճիգով ստեղծվելիք Հայաստանը: Մեր խորին համոզումով, որքան և կարևոր ու խոշոր լինի այսօրվա այդ հերոսական ճիգը, այնուամենայնիվ նա չէ, որ պիտի որոշի, վճռի հայության ապագայի վիճակը, ստեղծի այն Հայաստանը, որ մեզ համար բաղձալի է: Այդ Հայաստանը մենք վերը կոչեցինք Հոգևոր Հայաստան:

Եվ ահա, այսօրվա ճիգերի ու ջանքերի մեջ անգամ մենք չպիտի մոռանանք, որ մեր առաջ կա դեռ մի խոշոր ու վսեմ աշխատանք, գուցե ոչ այնքան շլացնող ու փայլուն իր արտաքինով, սակայն իմաստալից և վեհ՝ իր ներքին բովանդակությամբ:

**Հայության հավաքում կամ հայության կազմակերպում գաղափարական իմաստով - ահա՛ ինչ եմ հասկանում ես Հոգևոր Հայաստան ասելով: Դա այն կուլտուրան է, այն կուլտուրապես կազմակերպված ժողովուրդն է, որի գալուն մենք կուզեինք հավատալ:**

Ընթերցողը կարող է, սակայն, ենթադրել, որ իմ բաղձանքը լոկ կուլտուրական աշխատանքն է, որով ես առաջարկում եմ զբաղվել: Այո՛, եթե կուզեք, այդպես, միայն եթե այդ խաղաղ կուլտուրայի առաջընթացքը խանգարող հանգամանքներ չլինեն:

Քանի որ կան այդ արտաքին արգելքները, բնականաբար մեր ուշքը միշտ պիտի դարձած լինի նրանց վրա: Ես միանգամայն համաձայն եմ Դ. Անանունի հետ, որ **մեր ինտելիգենցիայի գլխավոր մեղքերց մեկը նրա ապոլիտիցիզմն է:**

Դրանից է բխում այն, որ մեր ազգայնական ինտելիգենցիան մեկուսացման մեջ է որոնում հայության փրկությունը, առանձնության մեջ է կամենում կառուցել ազգային ապագան: Ահա այդտեղից է ծագում նրա **ծխականությունը,** որ ես էլ շեշտել եմ մի անգամ և որին հակադրել եմ **քաղաքացիությունը:**

Քանի որ կլինեն այդ արտաքին խոչընդոտները, բնականաբար իբր քաղաքացիներ՝ մենք պետք է մաքառենք նրանց դեմ:

Սակայն, բացի այդ, կա և **ներքին կամքի** խնդիր: Ազգը միայն արտաքին ուժերի զորությամբ, իրերի արհեստական դասավորությամբ չի ստեղծվում, այլև իր անդամների ներքին մտավոր-հոգեկան կապով: **Պետք է, բացի արտաքին հնարավորությունից, լինի և ներքին մի զորություն, մի հոգևոր մղում, որ մարդկանց համախումբը ազգ է դարձնում:**

Որքան ուզում է թող անկախ ու ազատ լինի մի Ալբանիա, դա երբեք չի ստեղծի ազգ, եթե ալբանական ժողովուրդը մի ներքին մղում չունենա դեպի այդ և տևական ու ծանր աշխատության գնով ձեռք չբերի այդ արտոնությունը:

Ես ոչ մի արժեք չեմ տալիս այն ազգությանը, որ արտաքին սահմաններով է պահպանում իր ինքնությունը, և որ գլխավորն է՝ մի ինքնություն, որ կարիք էլ չկա պահպանելու:

Ահա թե ինչու՛, ես կարծում եմ, որ բացի արտաքին արգելքները հաղթահարելուց, ամեն մի՝ ազգ կազմելու ցանկություն ու կամք ունեցող ժողովուրդ **անդադար** պիտի ստեղծի այն արժեքները, որոնք նրա **ինքնության** առհավատչյաներն են:

Ֆրանսիացիների նման կուլտուրապես կազմակերպված ու զորեղ և քաղաքականապես ապահով մի ժողովուրդ ամեն կերպ աշխատում է պահպանել իր ինքնության գլխավոր նշանը - իր լեզուն, և դրա համար ամենուրեք հիմնում է այն ալիանսները, որ մեր Թիֆլիսում էլ կա: Մինչդեռ մենք մի Մոսկվայում, ուր բազմահազար ու հարուստ գաղութ ունենք, չունենք գեթ մի փոքրիկ ընկերություն, մի հիմնարկություն, որի նպատակը լիներ հայոց լեզվի պահպանումն ու տարածումը ոչ թե օտարների, այլ մերայինների՝ հայերի մեջ:

Մինչև այժմ մենք չունենք ոչ մի հիմնարկություն կամ ընկերություն, որ նպատակ ունենար, օրինակ՝ հայ նկարչությունը խրախուսելու, հավաքելու ի մի հայ նկարիչներին, որոնք այժմ արդեն ոչ միայն բնազդով, այլ գիտակցությամբ **հայ** են իրենց արվեստի մեջ (օրինակ՝ Սարյան, Սուրենյանց և այլն):

Չեմ ասում գրականության, մամուլի, դպրոցի մասին. դա հասկանալի է ինքնըստինքյան: Ահա այդ առօրյա կուլտուրական աշխատանքի առջև **ներկա պայմաններում** էլ չկան արգելքներ, արտաքին խոչընդոտներ, մինչդեռ դրանք գերագույն կարևորություն են ներկայացնում ազգային ապագան կառուցելու տեսակետից:

Չպետք է ծույլերի հոգեբանությամբ հույսներս դնենք լոկ արտաքին հրաշքների վրա. չպետք է մեզ կերակրենք այն հավատով, որ մի արտաքին փոփոխություն, մի դյութական ձեռք մեզ ազգ կդարձնի: Չպետք է կամենանք մեր հույսը և ապագան **նյութական Հայաստան** գաղափարի վրա հիմնել, այլ պիտի տենչանք ու աշխատենք **Հոգևոր Հայաստանի** համար:

Հակառակ դեպքում մենք կնմանվենք մեր տգետ հայ բուրժուային, որ առատ ձեռքով նվիրում է իր ոսկին դպրոցական շենքեր կառուցելու, առանց երբևիցե մտածելու՝ թե ինչպիսի՞, ի՞նչ դպրոց է լինելու այդ շենքի մեջ, թե վերջապես դպրո՞ց է լինելու դա… Ով լոկ շենքերի մասին է մտածում, նա «չգիտի ինչ է անում»:

Նայեցեք՝ մեր Հայրենիքում դուք կգտնեք շատ ու շատ շքեղ ու հոյակապ դպրոցական **շենքեր** (որոնց ճակատին անշուշտ ոսկետառ փորագրված է պանծալի բարերարի անունը). սակայն կգտնե՞ք արդյոք մի դպրոց, որ օրինակելի լիներ, կանգնած լիներ իր բարձրության վրա…

Չկամենանք շքեղ շենքերի հայրենիք դարձնել մեր Հայրենիքը, հոգու և մտքի՛ հպարտությամբ ճոխացնենք նրան:

«Շենքերի հայրենասիրությունը» - դա՛ է ահա մեր լիբերալ-ազգասեր-բուրժուա-ինտելիգենցիայի հայրենասիրությունը:

Ահա այդ արտաքին սահմաններով

առանձնացած խավարի մեջ դեգերող, բայց օտարների աչքին թոզ փչելու համար պատեհ դեպքերի համար արտաքին շքեղ ու հոյակապ շենքերով ճոխ Հայաստանն է նրանց բաղձանքի առարկան:

Դա **հայ համազգեստը հագին հայ ոստիկանի** մի հայրենիք է:

Չկամենա՛նք այդպիսի մի հայրենիք:

Հիշենք, որ այդ **զոոլոգիական ազգասիրության** արդյունքն է մեր այսօրվա հոգեկան-մտավոր սնանկությունը, մեր կուլտուրական թշվառությունը:

Որովհետև որպիսի՞ Հայաստան կարող է ստեղծել զոոլոգիական ազգասեր բուրժուա ինտելիգենտը, որը հայության ամենավսեմ գանձը - լեզուն արհամարհում է, եթե ոչ մի հայ ոստիկանի հայրենիք…

**Այդպիսի հայրենիք ես չե՛մ ուզում:**

Որովհետև, մի՞թե դիակ է իմ կամեցածը:

Իսկ մեր այսօրվա արյունալի հանդեսի ապազգայնացած թամադաների հայրենիքը, նրանց բաղձանքը մի դիակ է անհոգի:

Ու՞ր էր նրանց հռետորական ճարտարությունը, նրանց կրակե ոգևորությունը, նրանց հեռատես և խորաթափանց միտքը, նրանց բորբոքուն սերը, երբ մեռնում էր, երբ այժմ էլ մեր աչքի առջև մեռնում է այն, ինչ Հայաստանի հոգին ու սիրտն է, նրա ամենից թանկագին ու վսեմ գանձը, նրա կենդանության և ապագայի լավագույն առհավատչյան: Ու՞ր էին նրանք և ու՞ր են, երբ մեռնում է արհամարհված ու ընկած, բայց ազնիվ ու լուսեղեն հոգի՛ն Հայաստանի, երբ մեռնում է Հոգևոր Հայաստանը:

## Ե

Այդ Հոգևոր Հայաստանի կառուցումը ծանր ու տևական աշխատություն է պահանջում, անթիվ կյանքերի տոկուն հավատ և գիտակցություն, անարյուն, բայց ազնիվ, գուցե ավելի դժվար, ավելի ահավոր զոհաբերում, քան արյունի զոհաբերումը:

Մի Րաֆֆի, մի Արծրունի, մի Նալբանդյան, մի Դուրյան նույնպես ասպետներ են, գուցե ավելի մեծ հերոսներ են, քան նրանք, որ կռվի դաշտում են զոհաբերում իրենց կյանքը:

Մի՞թե անվերջ չարչարանքի և գերագույն մի բաղձանքի, անվերջ զրկանքների և վսեմ մի հավատի պայծառ պատկերը չէ մեր Հոգևոր Հայրենիքի ասպետ-զավակների կյանքը:

Եվ եթե այսօր մեկը ոչինչի տեղ է դնում նրանց՝ այդ ոգու ասպետներին ու միևնույն ժամանակ ծունր է չոքում այսօրվա արյունոտ կռվի հերոսների առջև, ես չեմ հավատում նրան, ես զզվում եմ նրա այդ հրաբորբոք հայրենասիրությունից:

Եթե իրավի այսօր պարզված է հայության սիրտը դեպի ապագան, եթե իրավի հավատում է նա իր ապագային, ապա իր հայացքը ոչ միայն դեպի Վան կամ Էրզրում պիտի ուղղի, այլ իր ներսը, իր հոգու խորքը՝ տեսնելու համար, թե կա՞ արդյոք իր մեջ այն ամենը, որ կենդանություն է ներշնչում մեր նյութական հայրենիքին, այդ Վան և Մուշ և Էրզրումին:

Իսկ եթե կա, ապա նա չի նստի ծույլ և անհավատ, այլ կամքի մի գերագույն թափով կձեռնարկի այդ Հոգևոր Հայրենիքի վերակառուցման:

Մեր երկիրը ավերակների երկիր է, ավերված մի Հայրենիք, որ մենք այսօր կամենում ենք կենդանացնել, որին կամենում ենք նոր կյանքի կոչել:

Մեր Հոգևոր Հայրենիքը նույնպես ավերված մի երկիր է, և այդ ավեր ու անավարտ շենքերը կանգնեցնելու համար որպիսի՜ ջերմ սեր, որպիսի՜ անձնվիրություն, որպիսի՜ բուռն ոգևորություն է հարկավոր:

Քննեցեք ձեր սիրտը և նայեցեք, թե կա՞ արդյոք այնտեղ հավատ, որով պիտի կենդանանա մեր այդ Հոգևոր Հայաստանը. եթե չկա, ապա զուր են ձեր ջանքերը նյութական Հայաստանի համար… Նա չի կենդանանա: Նա հոգո՛վ միայն կարող է կենդանի լինել: Դատարկ խոսքեր են մեր փոքր ազգ լինելու մասին հնչող ճառերը. ո՛չ բելգիացիք են մեծ ազգ, ո՛չ նորվեգացիք, մինչդեռ որպիսի դյութական անուններ են դրանք, որքա՜ն սիրելի ոչ միայն իրենց՝ այդ երկրների զավակների, այլև մեզ և ուրիշների համար...

Այսօրվա ահավոր անցքերը, ինչպես շատ իրավացի նկատել էր մի հայտնի ռուս գրող, ոչ միայն աշխարհագրական սահմանագծերը պիտի փոխեն, ազգերի փոխադարձ հարաբերությունների մի նոր դասավորում ստեղծեն, այլև գաղափարական աշխարհում պիտի մի նոր հեղաշրջում, մի վճռական փոփոխություն առաջացնեն:

Եվ իրավի: Այսօր մեր առջև կատարվող հսկայական անցքերը պիտի անհետ չանցնեն մեր հոգու համար, նրանք իրենց հեղաշրջող ազդեցությունը պիտի ունենան:

Ես գուշակ լինելու ոչ մի հավակնություն չունեմ: Սակայն ես կուզեի որոշ հետևողականություն գտնել իրերի ընթացքում և որոշ տվյալներից անել բոլոր եզրակացությունները, որ հնարավոր է անել: Մեր մեռած կյանքն այսօր կարծեք թե կենդանության նշաններ է ցույց տալիս: Թող լինեն այդ նշանները տարօրինակ և երբեմն այլանդակ, բայց այդ տարօրինակություններն ու այլանդակությունները ես կուզեի վերագրել անցյալին, կուզեի ենթադրել, որ անցյալի ստվերն է, որ դեռ ընկած է բացվող ապագայի վրա:

Եթե, իրավ, այդպես է, ապա իր աչքերը Հայաստանի դաշտերին ու սարերին հառած հայությունը պիտի ներշնչվի մի նոր ու առավել բարձր տենչանքով, մի պարզ ու խորին գիտակցությամբ, մի անսասան բաղձանքով կենդանություն ներշնչելու մեր կիսամեռ Հոգևոր Հայրենիքին, մեր ավերվող ու անդարձ անհետացող Հոգևոր Հայաստանին: Չէ՞ որ **նյութական կորուստները միշտ կարելի է վերադարձնել, իսկ հոգևոր կորուստն անդառնալի է:**

Չպետք է մատնանիշ անել արտաքին արգելքներն ու խոչընդոտները՝ դրանք միշտ կան, և դրանց դեմ, այո՛, պետք է կռվել:

Բայց նախ պետք է ներքին կամք, ներքին հավատ, անխախտ գիտակցություն. առանց այդ՝ ավելորդ է և արտաքին արգելքների դեմ կռվելը, ավելորդ է այդ պատնեշները ջնջելը, քանի որ, երբ ընկնեն այդ պատնեշները, հանկարծ պիտի տեսնեք դուք, որ զուր էին ձեր ջանքերը, ձեր զոհաբերումները, ձեր կռիվը՝ այդ բոլորը դուք արել եք մի անկենդան դիակի համար:

Ահա այդպիսի մի ներքին հավատ, մի խոր գիտակցություն է հարկավոր հայ մտավորականությանը:

Հարկավոր է, եթե նա իրավ սիրում է մեր ժողովուրդը, մեր երկիրը:

Իսկ երբ դա լինի, ես հավատում եմ, կլինի և Հոգևոր Հայաստանը, կենդանի կլինի մեր Հայրենիքը, ուրեմն կենդանի կլինի և այն Հայաստանը, որի համար մեր ժողովուրդը թափում է այսօր իր արյունը:

**1914**

# 10Ձ «ՄԵԾ Է ՋՈՒԼՄԱՆ ՎՏԱՆԳԸ»

են դեպքեր, որ մկրտությունններն անցկացվել են ռուսական եկեղեցիներում:

«18-19-րդ դարերում Կազանում երեք հայկական եկեղեցի է գործել: Նոր եկեղեցու կառուցումը մեծ ծախսերի հետ է կապված: Հայերն այս տարածքում ներկայացված են եղել դեռ տասներորդ դարից: Քաղաքի ներկայիս կենտրոնական հատվածում ժամանակին Հայկական կոչվող երկու փողոց կար, հայկական գերեզմանատուն», ասում է Միխայիլ Խաչատուրյանը:

Վաչագան Իսոյանն ընտանիքի հետ ապրում է քաղաքի այն հատվածում, ուր ժամանակին հայկական փողոցներն էին: «Այստեղ եմ ապրում արդեն 24 տարի: Հայաստանը, իհարկե, կարոտում եմ, սակայն այստեղ բնակարան ունեմ, աշխատանք: Վերադառնալ Հայաստան և ամեն ինչ նորից սկսել դժվար է», ասում է նա: Լիլիթը հոր հետ ամեն առավոտ ժամանակին Հայկական կոչվող փողոցով է ինստիտուտ շտապում: Քաղաքում հայկականի ամեն մի դրսևորում, հայկական անվանում նրանց ուրախություն և հրճվանք է պատճառում: Երկար տարիներ այստեղ են ապրում, սակայն քաղաքը հարազատ համարել, իսկ սեփական բնակարանը՝ հայրենի տուն, դեռևս դժվարանում են:

*Արևիկ ԲԱԴԱԼՅԱՆ*

# Поздравляем!

17 февраля в Московском доме национальностей проводился «Круглый стол» «Литературной газеты» на тему: «Литература России, литература Армении-XXI век». На этом представительном форуме мнений состоялось и награждение наиболее отличившихся переводчиков армянской и русской литератур медалью В. Я. Брюсова. Почётная медаль вручена была нашему другу и постоянному автору Ашоту Сагратяну. У Сагратяна уже есть Золотая Пушкинская медаль, медаль М. Ю. Лермонтова, медаль М. А. Шолохова, а теперь и медаль В. Я. Брюсова.

***ГОРЦАРАР.***

## ՍԱՐԳԻՍ ՀԱՑՊԱՆՅԱՆ




**Ծնվել է 1962 թ., Կիլիկիայի Ալեքսանդրեթ քաղաքում: Սովորել է Կ.Պոլսի Գարակէօզեան Վարժարանում, ապա՝ Սուրբ Խաչ Դպրեվանքում: 1979-1980 թթ. Ստամբուլի գեղարվեստի պետական ակադեմիայում ուսանելու տարիներին ձերբակալվել է թուրքական իշխանությունների կողմից, որոնք այսօր էլ հեռակա դատապարտել են նրան: 1980-ին անցել է Շվեյցարիա, Գերմանիա, ապա՝ Ֆրանսիա և աշխատանքին զուգահեռ Սորբոնի համալսարանում ուսանել կինոռեժիսուրա ու իրավագիտություն: 1980-ից 3 անգամ դիմել է Գերմանիայի և Ֆրանսիայի խորհրդային դեսպանատներին՝ մշտական բնակության նպատակով Հայաստան տեղափոխվելու: Միայն 1990-ին, Սերգեյ Փարաջանովի միջնորդությամբ հաջողել է գալ Հայրենիք, ուր և ապրում է մինչև օրս՝ կնոջ, դստեր և որդու հետ: Որպես կամավոր՝ 1992-ից մինչև հաղթական զինադադար Արցախում մասնակցել է ինքնապաշտպանական մարտերին: Մեկ քույրն ու եղբայրը բնակվում են Կ.Պոլսում. եղբայրը Ստամբուլի քաղաքային իշխանության պատգամավոր է Բաքրքյոյից: Երկու քույրերն ու ծնողներն ապրում են Գերմանիայում:**

# *Սփյուռքը ինչպես որ կա*

**Բաբե՜, դու լալի՞ս ես, դու զինաթա՞փ ես, երբ ես դեռ ոգորում, դեռ շարունակում եմ կռիվը: Ի՛ մարտ, անցո՛րդ, որպեսզի տարաբնակ հայը հայրենադարձվի, և մեր մեռելները գերեզման ունենան:**

ԳԱՐԵԳԻՆ ՆԺԴԵՀ

1968 թ. սեպտեմբեր ամսին ինձ ծննդավայրս Կիլիկիայից Կ.Պոլսո Շիշլի թաղամասում գտնվող Գարակէօզեան որբանոց էին բերել: Բերել էին հայեցի դաստիարակություն տալու: Սասունից, Բաղեշից (Բիթլիս), Տիգրանակերտից, Սեբաստիայից, Կեսարիայից, Ատիամանից, Մալաթիայից, Մուսալեռից և Ալեքսանդրեթից այստեղ էին բերել նաև ինձ նման շատ հայ երեխաների: Մեզնից շատերը հայերեն չգիտեին, ինձ նման իմացողներն էլ՝ խոսում էին տարբեր գավառաբարբառներով միմյանց: Մաշտոցյան տառերը մեզ բոլորիս անծանոթ էին:

Հայերենի մեր առաջին ուսուցչուհին՝ 1915 թիվը վերապրողներից, ծագումով սեբաստացի, արդեն բավականին պատկառելի տարիքով օրիորդ Մարիամ Մինասյանն էր: Հմուտ մանկավարժ, իր ողջ կյանքը երեխաներին մայրենին սովորեցնելով անցկացրած անձնավորություն ամեն առավոտ, արևածագից շատ առաջ Կ.Պոլսո մի թաղամասից մինչև մեր վարժարանի թաղամասը ոտքով գալիս-հասնում էր հատուկ մեզ՝ Արևմտյան Հայաստանից և Կիլիկիայից բերվածներիս հայերեն սովորեցնելու համար:

Այդ ժամերն օրիորդ Մարիամ Մինասյանի դասաժամերը չէին, նա ոչ էլ վճարվում էր դրանց դիմաց: Նա իր կամքով և սիրահոժար էր անում այդ, անում էր մեծ սիրով և գուրգուրանքով առ մեզ՝ 1915 թվի մնացորդների մնացորդների մնացորդներին, կարծես ի հեճուկս թշնամու և մոլախոտի նման դեռ Հայոց Էրկրում ծնվածներիս:

Կապուտաչյա, ամբողջովին սպիտակած մազերով օրիորդ Մարիամ Մինասյանը երբեք իմ հիշողությունից դուրս չի գալիս: Ես իմ կյանքում արած ամեն ինչի հիմքում, անկախ իմ կամքից, ՕՐԻՈՐԴ ՄԱՐԻԱՄ ՄԻՆԱՍՅԱՆԻՆ եմ ունեցել, ում հիշատակին էլ որդիական սրբազան երկյուղածությամբ ծռնվում է այս հրատարակումը: Ինքս ինձ միշտ հաշվետու եմ զգացել նրա հիշատակի առջև, թեկուզ աներևույթ, բայց կարծես միշտ նա եղել է իմ կողքին, ինձ հետ, ինձ համար: Նա ինձանից անբաժան իմ խիղճն է եղել. հիմա էլ է այդպես, բարեբախտաբար այս առումով ոչինչ չի փոխվել:

Նա է եղել իմ առաջին ուսուցչուհին, դաստիարակը և իմ խմորի թթխմորը: Եվ նա այս ամենն արել է Թալեաթի չքեղ գերեզմանից մի քանի հարյուր մետր հեռավորության վրա գտնվող Պոլսո գիշերօթիկ Գարակէօզեան Վարժարանում: Թալեաթը շուտվանից անցել էր պատմության աղբանոցը, բայց 1915 թվականի որբերից օրիորդ Մարիամ Մինասյանը նույն հողի վրա շարունակում էր հայ մարդ ձևավորել: Ահա՛ թե ինչու ես կամ ու այսպիսին եմ...

Ձևավորումս շարունակվել է Կ.Պոլսո Սուրբ Խաչ Դպրեվանքում: Այստեղ գիտակցորեն հասկացել եմ մարդ՝ մեծատառով ՄԱՐԴ հասկացության իրական արժեքն ու իմաստը: Դա եղել է այն եզակի վայրը իմ աշխարհում, ուր ամեն ինչ պատկանել է բոլորին՝ մանկությունը, գիտելիքը, խաղերը, սերը, կարոտը, Արևմտյան Հայաստանն ու Կիլիկիան, ամեն ինչ և ամեն վայրկյան պատկանել է մեզ բոլորիս: Ամեն բան եղել է ընդհանուր և ամենքիս համար: Մեկս եղել ենք բոլորի համար, բոլորը եղել են թե՛ մեկիս, թե՛ բոլորիս համար:

Չգիտեմ՝ արդյո՞ք նկարագրելու մեջ լուրջ դժվարություն ունեցածս՝ Կ.Պոլսո Սուրբ Խաչ Դպրեվանքի նմանը կա աշխարհում, բայց ես հենց այդ եղածի պատերից ներս անցկացրած գիշերօթիկ վեց տարիների ընթացքում եմ մարդ դարձել: Լինելով Արևմտյան Հայաստանի ու Կիլիկիո, այսպես ասած, վերջին հայ մոհիկանների շառավիղներից՝ իմ համն ու հոտն ստացել եմ Սուրբ Խաչ Դպրեվանքում: Գարակէօզեան Վարժարանում օրիորդ Մարիամ Մինասյանի ձեռքով իմ մարդկային խմորին դրված թթխմորը Սուրբ Խաչ Դպրեվանքում արդեն պատրաստի հաց դարձավ: Եվ այս ամենը կատարվում էր բանաստեղծ Պետրոս Դուրյանի շիրիմից միմիայն մի քանի հարյուր մետր հեռավորության վրա գտնվող Դպրեվանքում:

Այնտեղ եմ սովորել անխտիր ում ասես հաշիվ տալն ու պահանջելը: Առ այսօր դեռ հաշիվ եմ տալիս աշխարհին՝ շատ լավ իմանալով հանդերձ, որ աշխարհից իմ հաշիվ պահանջելու օրերն անհասանելի սարերի հետևում չեն:

Թուրքի հետ հակասության պատճառով ես դարձա սփյուռքահայ, այլապես ինչու՞ պիտի հեռանայի իմ ծննդավայր Կիլիկիայից, ինչու՞ պիտի լքեի իմ հայրենի հողը:

Մենք՝ 1980-ականների երիտասարդներս, հենց Թուրքիայի Հանրապետության ներսում սկսեցինք մի քիչ անսովոր բան՝ պահանջատիրություն ներկայացնել: Ասում էինք, որ պետք է մեր լեզվով խոսենք, մենք ենք այդտեղի իսկական տերերը, որ թուրքերն են եկվոր և իրենք են մեր ամբողջ դժբախտությունների պատճառը դարձել, որ նրանք չունեն այնքան կրթություն, ազնվություն ու բարոյականություն՝ խոստովանելու, իրենք իրենց հետ հաշվի նստելու, իրենք իրենց վերլուծություններն անելու: 1978-79 թթ. Կ.Պոլսում ուսանող հայ երիտասարդությունը քաջությունն ունեցավ այդ հարցերն իրենց սեղանի վրա դնելու:

Այս թեմաներով մամուլում հանդես գալու համար ձերբակալվեցի, տանջվեցի թուրքերի կողմից: Մանավանդ ռազմական հեղաշրջումից հետո, երբ այնտեղ հաստատվեց ֆաշիստական համակարգ, ինձ համար այլևս անհնարին դարձավ Թուրքիայում մնալը: 1915 թվականի և 1980-ականների Թուրքիաների միջև տարբերություն չկար: Եվ հայկական հողում ծնվածս, հայկական միջավայրում մեծացածս դարձա սփյուռքահայ, հայտնվեցի Եվրոպայում:

1980-ականների Շվեյցարիա, Գերմանիա, Ֆրանսիա. ահավասի՜կ իմ ուղին, որտեղ ծանոթացա տեղի հայկական համայնքների հետ: Տեսա, որ այդ մարդիկ իսկապես կտրված են իրենց արմատից, որ նույնիսկ հարևան չեն իրենց լեզվին, որ ծանոթ չեն իրենց պատմությանը, որ անհաղորդ են իրենց մշակույթին: Երբեմն անուն-ազգանունները մնացել են հայկական, սակայն չկար հայը: Եվ ինձ՝ հայրենի հողից եկած մարդուս ցնցեց այդ իրականության հետ հանդիպումը: Ես չէի կարողանում պատկերացնել. ապրում էին միլիոնավոր մարդիկ, կարծես թե կային, բայց իրականում չկային: Չկար այդ մարդը, ո՛չ մի բանով չկար. չկար մշակութապես, չկար հոգեպես, պատմական արմատներից ընդհանրապես կտրված էր: Նույնիսկ նամակագրական կապ չուներ իր հարազատների հետ, չուներ կարոտ: Արտաքնապես կար այդ մարդը. մարմին ուներ, երկու ոտք

ուներ, իբրև թե գլուխ ուներ, սակայն կատարյալ մի անասունի, կենդանու մինչ այժմ անհայտ մի տեսակի նման բան էր: Եվ ահա այսպես էր, որ ես ինձ համար հայտնագործեցի Սփյուռքը:

Ես շատ երկար, 10 տարուց ավելի ապրել եմ Սփյուռք ասված իրականության մեջ, և գիշեր ու զօր տանջել է ինձ այս միտքը, թե ի՞նչ է իրականում Սփյուռքը: Երբ ես Հայաստան եկա, շատ ավելի խորքից ճանաչեցի Սփյուռքը: Հայաստանում արդեն վերջապես հասկացել եմ, որ Սփյուռքը կա՛մ դինոզավրերի ժամանակաշրջանի նման վերլուծման ենթակա մի հանգամանք է, կա՛մ դեռ չհայտնաբերված անասունի մի տեսակ, որին պետք է անվանել, կոչել ինչպես որ ինքն է, որովհետև ինքը չունի այդ գիտակցությունն ու քաջությունը՝ ասելու. «Ես բաղկանում եմ այս, այս, այս մասերից, մտածում եմ այսպես, գործում եմ այսպես. մտածում և գործում եմ՝ ուրեմն կամ»: Բայց արդյո՞ք մտածում է: Մտածելն ընդհանրապես մարդուն ու մարդկային հասարակությանն է տրված, այսինքն՝ մարդն է մտածում, բանական էակն է մտածում: Բայց իմ սփյուռքահայության տասնամյակում և հիմա, երբ շատ ավելի հաճախ եմ շփվում Սփյուռքի ու սփյուռքահայերի հետ, չեմ տեսնում **մտածող ուղեղ** և **գործող մարմին:** Չկա՛ այդ բանը: Ընդհանրապես չկա: Դա բացակայում է, որովհետև բացակայում են այնքան շատ բաներ, որ գոյության պարտադիր պայմաններն են:

Սփյուռք ասված իրականությունը, որ մոտավորապես 19-րդ դարի վերջից է սկսվել ու շարունակվում է մոտ 100 տարի, մահվան դատապարտված բանտարկյալի նման է: Սփյուռքն իր բոլոր գաղթօջախներով՝ մեծ մի բանտ է, ուր մարդիկ **կամավոր** են գնում: Կարծես հանցագործ լինեն, որ ինքնակամ գնում հանձնվում են այդ Սփյուռք կոչեցյալին՝ ասելով. «Մենք եկանք: Հիմա որ խուցն ուզում եք՝ տեղավորեք մեզ: Մենք ամեն ինչի պատրաստ ենք, մենք եկել ենք մահանալու»: Այսինքն՝ անձնասպանության են գնում: Ինչպե՞ս կարող է մարդն ինքն իրեն սպանել: Ահավասիկ, եթե աշխարհում ամեն հայ սրա պատասխանն իր համար տա, ուրեմն հայերի հարցը կլուծվի: **Հայն ինքնաոչնչացման գնալու մեծագույն տաղանդ ունեցող միակ և անկրկնելի ազգն է մոլորակի վրա:**

Հայերն իսկապես շատ ծեր են: Մեր հասակակից ազգերն այսօր պատմության տարբեր դասագրքերում են միայն: Բայց որ մենք իբրև դեռ կանք, գոյատևում ենք՝ այս երևույթը մի քիչ խաբուսիկ է: Եթե քանակ ես հաշվում, ինչպես ոչխարի հոտը, ապա՝ այո՛, այսքան ու այսքան ենք: Բայց ազգն անասունների գլխաքանակ չէ, որովհետև այն ունի արմատներ, պատմություն, անցյալ, մշակույթ, լեզու..., որ, ուզես թե չուզես, քեզ կապում է քեզնից առաջվա հետ: Եվ եթե դու կաս, պետք է ապագա կերտես, այդ անցյալդ պետք է ապագայի հետ **կամրջվի:**

Այդ մարդիկ, չանվանելով իրենց ապրած իրական կյանքը, չեն ուզում իրականության աչքերի մեջ նայել ազնվորեն՝ առանց խաբելու թե՛ իրենք իրենց և թե՛ դիմացինին, ու ապրում են կատարյալ դժոխքի մեջ:

Երբ 1990 թ. մշտական բնակության նպատակով եկա Հայաստան ու սկսեցի այստեղ ապրել, գործել, տեսնել, շփվել, մտածել, տեսա՝ ինչքան խորթ էր ինձ այս ամբողջը. իսկապես շատ խորթ էր: Բայց դրա մեջ ոչ մեկը մեղավոր չէր. ես հետո ինքս ինձ մեղադրեցի: Ես էի իմ մտքի մեջ նկարել մի Հայաստան, որտեղ որպես դերասաններ պատկերել էի ինձ և ուրիշ մարդկանց, գրել էի սցենարը, երաժշտությունը, ամբողջ թատրոնը: Այստեղ հասկացա, որ դա՛ չէ Հայաստանը՝ մտացածինը: Ուրեմն տարիներ շարունակ պատրաստած իմ այդ թատերականությունն էր կեղծ կամ ուտոպիա: Իմ այդ ուտոպիան փշրվեց միանգամից. ես տեսա կենդանի մարդկանց՝ իրենց առօրյայով ու կենցաղով: Հասկացա, որ կենդանի էակը՝ իրական Հայրենիքը սա՛ է: Այդ իրականությունը տեսած մարդը, այսինքն՝ մի քայլ առաջ նետած մարդը, անշուշտ, չէր կարող ետ քայլ նետել. **Հայաստան քայլը՝ արվելիք վերջին քայլն էր:**

Ես կարող եմ ասել, որ իմ ամբողջ գերդաստանից (մենք հինգ քույր ու եղբայր ենք) ես միակն եմ, որ գիտակցաբար որոշել եմ գալ Հայաստան ու ապրել այստեղ՝ ինչ էլ որ լինի Հայաստանի վիճակը՝ պատերազմ կամ սով, վերացում կամ բարգավաճ ապագա: Գալով Հայաստան՝ ուզում էի մեկ անհատի, մեկ հայի անհատական ճակատագիրս ընդհանուր ճակատագրի հետ միացնել. այսքան բան: Այսինքն՝ մի մեծ կաթսայի մեջ եփվող ճաշի մեջ ես էլ էի լինելու՝ անկախ այն բանից՝ կվառվի՞, թե՞ ոչ այդ ճաշը: Եվ այսպես ես վերադառնում էի իմ մանկությանը, տատիկիս պատմած հայկական հեքիաթները, սովորեցրած հայկական բանաստեղծությունները, որոնք այսօր արդեն չկան Սփյուռքի մեջ: Այդ հայկականությունն արդեն վերացած է: Սփյուռքում թոռնիկն իր տատիկին չի ճանաչում, չի ապրում իր տատի ու պապի հետ, նույն բակը չունեն նրանք, երբևիցե նույն թթի ծառից չեն օգտվում, միմյանց հետ նույնիսկ նամակակցական կապ չունեն: Տարին կամ երկու տարին մեկ, եթե իհարկե ճանաչում են զիրար, ու գիտեն, որ ինչ-որ մի երկրում մի մորաքույր կա, հեռախոսով հազիվ թե կապվում խոսում են: **Սա՛ է Սփյուռքը:**

Հայաստան գալուցս քիչ անց սկսվեցին ռազմական գործողությունները: Ես աչքովս տեսա, թե ինչպես են մարդիկ կամավոր ճակատ մեկնում: Պատերազմն ընդհանրապես ամենադաժան երևույթն է մարդկության համար: Ոչ մեկի համար պատերազմը չի կարող լավը լինել. չկա մի մարդ աշխարհում, որ ասի. «Գիտե՞ս, ես ուզում եմ պատերազմ, դա շատ լավ բան է, դրանից այս, այս, այս լավ բաները կլինեն»: Բայց անդորրից այդքան վատ, հակասական իրավիճակին այսպես կամավոր գնալ՝ ես Հայաստանում տեսա:

Ես շշմած էի, երբ Սփյուռքում ասում էին, թե՝ «Հայաստանում մեկ միլիոն մարդ ոտքի է ելել»: Ես չէի հավատում: Մոտավորապես երեք ամիս անց Փարիզում մեկ հատ տեսաերիզ ստացանք Երևանից: Չգիտեմ՝ 10, 20, 30 անգամ, առանց հավատալու այդ ցույցերին, նկարահանված ժապավենը դիտեցինք: Ընկերներով չէինք կարողանում հասկանալ, թե դա ինչպես է պատահել: Ոչ մի հարց աշխարհի ոչ մի երկրում չի կարող (մեծ թե փոքր ժողովուրդ՝ մարդկանց քանակն էական չէ) երեք մարդուց մեկին ոտքի հանել: Այս տարօրինակ իրավիճակը Հայաստանում ստացվել էր:

Ինձ համար հիմա էլ սա՝ պատասխանը չգտնված հարց է: Ես ուզում եմ ինքս ինձ այդ հարցի պատասխանը տալ, որը, շատ դժբախտաբար, չեմ կարողանում ճարել, որից էլ կախված է արդեն, կարծում եմ, **մեր երկրի ապագան:** Այսինքն՝ եթե մի հարցի առիթով երեք հայից մեկը ոտքի է կանգնել, ինչու՞ վաղն այդ երեք հայից երկուսը չպիտի կանգներ, կամ՝ այդ երեք հայից մյուս մեկը ևս չկանգներ մեկ այլ հարցի առիթով: Այդ երեք հայից մեկը հիմա պառկած վիճակում է, երկրորդը գնացել է երկրից, մյուսն էլ՝ կա՞, թե՞ չկա՝ հարցականի տակ է դրված, շատ դժբախտաբար: Սա անհասկանալի երևույթ է, և ոչ ոք չի ուզում լուրջ վերլուծության ենթարկել այս իրավիճակը, հասկանալ՝ ինչու՞:

Ասում ենք՝ մարդ ենք, բանական էակ ենք ու **ինչու**ներ կան աշխարհում, այդ բոլոր **ինչու**ներն այսպես թե այնպես իրենց պատասխաններն ունեն, բայց հայերն այդ ինչուները կարծես թե շատ չեն հարցնում, չեն ուզում հարցրած լինել, ավելի շատ խուսափում են հարցնելուց, իրենց դուր չեկած պատասխանը գտնելուց. ավելի հարմար են համարում չհարցնել ու փախչել-գնալ այստեղից: Այսինքն՝ հեշտին են դիմում:

Իսկ այդ տարիներին, որ ես նոր էի եկել, մարդիկ հեշտին չէին դիմում: Հայաստանում ես ճանաչեցի հարյուրավոր, հազարավոր մարդկանց, ովքեր կին, ընտանիք, աշխատանք ունեին, բայց թողեցին այդ ամբողջն ու նստեցին մի ուղղաթիռ (ես էլ եմ եղել այդ ուղղաթիռի մեջ, դրա համար էլ լավ եմ ճանաչում այդ ընթացքը)՝ գնալու համար մի տեղ ու ասելու. «Սա մե՛րն է, մենք սա պահպանելու համար ենք եկել ու այստեղ կարող ենք մահանալ»: Սա տարօրինակ երևույթ էր. խաղաղ ընթացքից մարդն այսպես կամավոր գնում էր ամենահակասական՝ պատերազմական իրավիճակին: Կանգնում էր՝ ասելու, որ պիտի պաշտպանի իր երկրի խաղաղությունն ու իր ազգի իրավունքը: Այդպիսիներն ինչքա՜ն շատ էին 90-ականների Հայաստանում:

Եվ հենց դրա շնորհիվ մեր փոքրիկ Արցախ աշխարհում գոնե կարողացանք թշնամուն կասեցնել, հասանք այն բանին, որ նա մեզ հետ չվարվեր այնպես, ինչպես միշտ սովոր էր վարվելու: Սա կարծեմ առաջին երևույթն էր, որ ցնցեց հային, **սակայն հայն առ այսօր չի կարողանում հոգեբանորեն մարսել իր հաղթանակը:** Ես հիշում եմ՝ Արցախից Երևան ամեն գալիս մարդիկ, լինեին այստեղից թե Սփյուռքից, հարցնում էին. «Ե՞րբ են մերոնք նահանջելու, ե՞րբ են հողերը տրվելու»: Հայը, որ միշտ պարտություն էր տեսել ու լսել նախնիներից, միշտ լաց ու կոծի էր վարժվել, հիմա պատրաստ չէր խնդալու, արժանապատիվ այդ սերնդի տված կռիվը գնահատելու, ինքն իր արածին հավատալու: Շատ խաբուսիկ բան կար Երևանում այդ ժամանակ՝ «Սա ռուսների գործն է, ռուսներն են անում» ու նման բաներ, ինչը ողբերգություն է: Եվ սա ընդհանուր հայկական երեւույթ է:

Արցախ աշխարհում ես (լինելով պատերազմի մասնակից իբրև կամավոր) իմ աչքերով տեսա լիիրավ հաղթանակ, լիիրավ մարդ, լիիրավ գյուղացի, լիիրավ հայ, լիիրավ ամեն ինչ: Եվ այդտեղ՝ ճակատում է, որ խաբուսիկ ոչինչ չկա: Կար մահն ու մեջտեղում՝ խրամատում՝ կյանքը: **Կեղծիքի չգտնված բանն աշխարհում ընդհանրապես խրամատն է,** որտեղ կա՛մ պիտի ապրես ու կյանքը շարունակվի, կա՛մ՝ քեզ պիտի սպանեն: Մահն ու կյանքը միայն այդտեղ են շփվում իրար հետ՝ խրամատում: **Հայերն ընդհանրապես միշտ խուսափում են խրամատից, միշտ ուզում են խուսափած լինել:** Եվ միշտ մյուս օրվան են թողնում այսօրվա հոգսն ու գործը՝ թե իբր հետո կլուծվի, հետո կլուծվի, հետո կլուծվի: 90-ականների սերնդի վրա շատ մեծ էր սերունդների կուտակած՝ գործ անելու՝ իրավիճակից դուրս գալու, քրտինք թափելու, արյուն տալու բեռը: Եվ իսկապես մի քանի սերունդների գործն արեց կամ փորձեց անել այդ երիտասարդությունը:

**Ես խրամատում դարձյալ բախվեցի իմ անցյալի հետ:** «Հայ դատ», «պահանջատիրություն», «մեր հողերը» և նման գաղափարներով մեծացածս, ուրեմն, սպասում էի, որ հիմա կգան, ուր որ է մե-

րոնք կգան: «Մերոնք», այսինքն՝ սփյուռքահայերը այսօր կգան, վաղը կգան, մյուս օրը կգան: Տեսա՝ եկող չկա: Տուրիստ եկող չկա, Գառնի-Գեղարդ-Էջմիածնի համար եկող չկա, ու՞ր մնաց թե պատերազմի գան: Այդ ժամանակ հարց ես ուղղում ինքդ քեզ՝ բա ու՞ր մնացին ազգ, ազգություն, հող, հայրենիք գաղափարները: Մի՞թե Մուշը, Վանը, Ալաշկերտը..., որտեղ այսօր քուրդն ու թուրքն են ապրում, որ վերացական, քո մտքի միջի, քո հոգու միջի հայրենիք է, ու դու իբրև դրանց համար ես ապրում, իսկ Արցախ աշխարհի կոնկրետ այս կամ այն գյուղը, ուր հայն է ապրում, հայն է հողը մշակում, որ ամենասարսափելի իրավիճակում է, որ չորս կողմից շրջափակման մեջ է, **հայրենիք չէ:** Ճակատագիրն էլ տվել է հնարավորություն, որ այդ ամենադժվար պահին գաս ու օգնես քո հայրենակցին, **բայց դու չկաս:**

Սա ինձ համար ճակատագրական էր՝ այդ սփյուռքյան էջի վերջին գնահատականը տալու: Չէ՛ր կարելի այդքան մարդկանց խաբել: Տարիներ շարունակ իբրև թե այդքան «ազգային», «հայրենասիրական» չգիտեմ ինչ դաստիարակություն ես տալիս մարդուն, սակայն երբ գալիս է դրա քննության շրջանը, չկա քննություն հանձնողը, չկա ու չկա, փախել է. դիպլոմն առել ու փախել է: **Ինձ համար այդտեղ քանդվեց Սփյուռքի թղթե դղյակը:**

1992-93-ին, երբ Մարտակերտն ու Շահումյանն ադրբեջանցիների ձեռքին էր, ես հասկացա, որ ո՛չ՝ սա ազգային խնդիր լինելով՝ չի ընկալվում, սա իրենց՝ հատկապես սփյուռքահայերին չի հուզում: Այդ իսկ պատճառով էլ **երկու ձեռքերիս մատների չափ սփյուռքահայ չի մասնակցել այս պատերազմին:** Եվ հիշում ես պատմությունը, Ֆրանկոյի ժամանակաշրջանը. Իսպանիայի ներքին խնդրի համար, որպեսզի ֆաշիստները չգան իշխանության, մինչևիսկ Մալազիայից, Ավստրալիայից, Արգենտինայից, Կանադայից, չգիտեմ էլ որտեղից հազարավոր մարդիկ, ովքեր իսպանացի չէին, ծագումով Իսպանիայի հետ կապ չունեին, 30-ականներին կամավոր գնացին կռվելու ազատ Իսպանիայի համար ու հազարներով ընկան: Այսինքն՝ մարդկության համար ելան ու ընկան: Է՛հ, ուրեմն, մեզ մոտ ազգության համար էլ չեկան և չընկան, ուր մնաց թե մարդկության համար լավ բանի ընդունակ լինեին: Դե հիմա անուն տանք սրան, եթե կարող ենք:

Ամեն անգամ, երբ Եռաբլուր կամ Արցախի որևէ գերեզմանատուն եմ այցելում, տեսնում եմ հազարավոր երիտասարդների շիրիմներն ու, ուզեմ թե չուզեմ, ամաչում եմ: Ամո՛թ է: Մեր ազգի քանակ ասելը շատ են սիրում՝ 7-8 միլիոն. ու այդքանից հազարներով շիրիմներ կան Արցախ ու Հայաստան, և փաստորեն սփյուռքահայ մի քանի մասնակիցներ միմիայն: Նրանք էլ, ըստ երևույթին, ամոթից են եկել ու մասնակցել այս ամբողջին և վե՞րջ:

Սա աններելի է, որովհետև տարիներ շարունակ, հատկապես «ավանդական» կոչվող կուսակցությունների «Ազատ, անկախ, միացյալ Հայաստան պիտի կերտենք», «Մենք չենք կարող պանդխտության մեջ ապրել», «Դեպի հայրենի՜ք» կոչերով, այժմ արդեն ըստ իս այդ լոլոներով սերունդներ աճեցրած այդ ամբողջ համակարգը միանգամից հայտնվեց շատ պարզ իրականության մեջ, ողորմելի վիճակում: Սա կեղծիք է, սա սուտ է, սա ճիշտ չէ, մարդկանց ճիշտը չեն ասում:

Երբ ես Սփյուռքում մարդկանց հետ անմիջական կապերի մեջ եմ մտնում, իրենք չեն զորում անկեղծանալ ու ասել. «Այո՛, դա մեզ չի հուզում, դա մեր խնդիրը չէ, մենք միայն ձև ենք անում: Ի՞նչ պատերազմ, ի՞նչ հայրենիք, ի՞նչ հող, ի՞նչ տնտեսություն, ի՞նչ Հայաստան, ի՞նչ ես խոսում: Մեզ հետաքրքրում է մեր գրպանում եղած փողի չափը. հիմա մենք դա «ղումարի» կտանք թե այլ բանի վրա կծախսենք՝ դա մեր պրոբլեմն է: Ինչու՞ ես մեզնից ուզում կերտել այն, ինչ դու ես ցանկանում»: Սա՛ է իրողությունը:

Ես կարծում էի, թե այս ամբողջը բոլորիս է պատկանում՝ և՛ պարտքը, և՛ իրավունքը, որ Հայաստանը ոչ մեկի սեփականաշնորհված հողը չէ: Երբ հատկապես սփյուռքահայի աչքերով ես նայում այդ վերացական «հայրենիք» հասկացությանը՝ բոլորինն է, որի համար իբրև թե կարոտով-բանով են ապրել սերունդներ, սակայն երբ սկուտեղի վրա գալիս է անկախ Հայրենիքը, նա արդեն դրանից հրաժարվում է, չի ուզում դրա մասին խոսել, մտածել, գործել, **չի ուզում իր պարտքը վճարել գոնե իր կարոտներին** (եթե իրականում դրանք եղել են անկեղծ), տեր կանգնել իր կարոտներին. այսինքն ստացվում է, որ նույնիսկ իր երբեմնի «կարոտների» դավաճանն է նա: **Պարտքը վճարել չի ուզում, բայց պարտքն ամեն վայրկյան վճարող հայաստանցու կյանքն ու մահը տնօրինելու իրավունք է պահանջում, երկքաղաքացիություն է ուզում** (թեև դրա համար միանգամյա չնչին վճարն էլ չի կատարի. քանի՞ սփյուռքահայ են այս տարիների ընթացքում ընդամենը 300 $ վճարելով կացության հատուկ կարգավիճակ ստացել): Բանականությունից բացի այստեղ բարոյականություն էլ չկա:

1992-ին դեմքս ամբողջությամբ այրվել էր, և ընկերներս Ամերիկայից անծանոթ մեկի միջոցով հատուկ քսուք էին ուղարկել: Այդ մարդը եկավ մեր տուն, զրուցեցինք: Ասում եմ.

- Ինչու՞ ես եկել, ի՞նչ գործ ունես այս կողմերում:
- Իմ հայրենիքն է, Հայաստանն է, - ասում է:

Ասում եմ.

- Բայց դու ի՞նչ կապ ունես Հայաստանի հետ:
- Ո՞նց թե, - զարմացավ, - իմ հողն է՝ եկել եմ:
- Դու այս հողում վաղը լինելու՞ ես, - հարցնում եմ:
- Չէ, - ասում է, - երկուշաբթի թռչելու եմ:
- Բա այդ ո՞նց դարձավ քո հողը. կատուն որ կատու է, - ասում եմ, - եթե մի սենյակ տանես, կհոտոտի, կպտտվի ու կգծի իր սահմանը: Դու քո սահմանը Լոս Անջելեսում գծել ես՝ չէ՞: Ու եթե ավելի շուտ օդանավ լինի՝ նստի գնա, որովհետև քո այստեղ լինելն ինձ վիրավորում է: Ես դա չեմ հանդուրժում:
- Ինչու՞, - զարմացավ:
- Դու այս երկրի համար ի՞նչ ես արել, - ասում եմ, - ընդհանրապես՝ քո ծնված օրից մինչև այսօր: Ոչինչ չես արել՝ չէ՞:
- Այո, - ասում է:
- Դե որ այո, հիմա դու քո ոչինչ չարած երկիրը գալիս ես, ու այստեղի մարդիկ էլ, որովհետև սփյուռքահայ ես, չինացու նման երկու տակ առջևդ ծռվում են, կարծիքդ են հարցնում, տուն են հրավիրում, հյու-րասիրում են: Չէ՞: Ուրեմն դու ոչինչ չտալով՝ արդեն ստանում ես ու հետն էլ ասում՝ Ի՛մ հողն է. **ո՞ր իրավունքով:** Ու եթե պիտի չտաս, այլ միայն ստանաս, ուրեմն արագ հեռացիր, իսկ եթե տալու ես, ուրեմն շուտ-շուտ արի:

Այդ մարդը վիրավորվեց, ես դիտավորյալ կպա նրա արժանապատվությանը: Այդ մարդը դրանից ազդվեց. իրեն ճանաչողները հետո ասում էին (այդ իմ միակ հանդիպումն էր նրա հետ), թե Հայաստանից վերադառնալուց հետո նա լրիվ փոխվել էր, այլ մարդ էր դարձել: Այդ վիրավորվող մարդը լուսահոգի Վարուժան Քարյանն էր, որ Լոս Անջելես գնալուց հետո հիմնեց «Հայրենիք» միությունը և 3 ամիս անց 8 կոնտեյներ սնունդ ու հագուստ ուղարկեց Ղարաբաղ: Մի ամբողջ շրջանին այդ մարդը 2 տարի պահեց: Մինչև այդ Լոս Անջելեսում կար 56 «հայկական» միություն: «Հայրենիքը» Վարուժան Քարյանի շնորհիվ դարձավ ամենագործուն միությունը, որ հիմա արդեն 5-6 հարյուր անդամ ունի, ովքեր պետությանը հարկ տալու նման ամեն ամիս իրենց ազգային տուրքն են տալիս կազմակերպությանը և տարին մի քանի լուրջ ծրագրեր են իրականացնում Հայաստանում ու Արցախում. և արդեն 10 տարի: Եվ այս ամբողջը ծնվեց վիրավորելու շնորհիվ: Վիրավորելը շատ ճիշտ բան է, եթե մարդը վիրավորվելու ընդունակ է: Բայց շատ քիչ սփյուռքահայեր են վիրավորվելու ունակ:

Վարուժանն այնտեղ ասել էր, որ իրենց առօրյա հիմար ծախսերով հնարավոր է երկիր պահել: Եվ ճիշտ էր ասել: **Ես ամբողջ Սփյուռքին ՄԵ՛-ՂԱ՛-ԴՐ՛-ՐՈՒ՛Մ ԵՄ:** Եթե օրը մի քանի բաժակ սուրճ խմող սփյուռքահայը միայն մեկ գավաթի գումարը երկրի համար մի կողմ դներ, այսօր Հայաստանը ոտքի կանգնած կլիներ, Հայաստանը ծաղկած կլիներ:

**10 տարվա մեջ «Հայաստան» համահայկական հիմնադրամը չգիտեմ ինչքան միլիոն փող է հավաքել: Իսկ Հայաստանի 1 տարվա բյուջեն մոտ 400 միլիոն է: Այդ Սփյուռք ասվածի 10 տարվա արածը, վստահ եմ, Հայաստանի 1 տարվա բյուջեի 1/5-ն էլ չի կազմում: Սա արդեն խոսում է Սփյուռքի մասին. Սփյուռքը պիտի աներ 100, արել է՝ 1, 99-ը չի՛ արել:**

Միայն իմ ընկերների ու ծանոթների միջոցներով իմ միջնորդությամբ Հայաստան և Արցախ է մտել մի քանի միլիոն դոլար: Հարց եմ տալիս Սփյուռքին՝ **ի՞նչ է՝ միայն իմ ծանոթներ՝ բազմապատկած 10՝ հավասար է «Հայաստան» համահայկական հիմնադրամի՞ն:** Ինձ նման ձրի աշխատող 10 հոգի հերիք է, որ ամբողջ աշխարհում տարածված «Հայաստան» համահայկական հիմնադրամի օֆիսների, տեխնիկայի ու ամբողջ օրը եղունգները խարտող, հեռախոսով շատախոսող և համակարգչային հիմար խաղեր խաղացող քարտուղարուհիների հսկայական գումարների անիմաստ վատնումը չլինի: Բազմաթիվ անգամ այդ հոգաբարձուների ու նվիրատուների Հայաստան գնալ-գալու գումարները կարող էին նաև օգտակար գործի համար լինել. մեկ հոգու ծախսը մոտ 4 հազար դոլար է, իրենց կանանց կամամուսիններին էլ ձեռքի հետ հետները բերում, «Արմենիա» հյուրանոցում մի քանի օր պահում են, ինչ է թե ասեն. «Այս քարը ճիշտ եք դրել, աբու՜, պատի այս գույնը ի՜նչ ճիշտ եք ընտրել» կամ՝ հակառակը:

Իրենց հերթին էլ այստեղի պատվիրակություններն են գնում այնտեղ ու առաջնակարգ հյուրանոցներում մնում, փոխանակ որևէ հայի տանը գիշերեն, թեկուզ գետնին պառկեն: Գետնին քնածներն են երկիր կառուցում, անտառներում քնածներն են երկիր կառուցում, սոված ուսուցիչն է երկիր կառուցում, ոչ թե սրանք:

**Սա բոլորիս համահայկական ամոթի հիմնադրամն է...**

Ինձ շատ ցավ պատճառեց, երբ տեղական մի օրաթերթում կարդացի, որ սփյուռքյան «ավանդական կուսակցություններից» մեկն Իջևանում իր հերթական մասնաճյուղն է բացել՝ երդման արարողու-

թյամբ ու նման բաներով 11 հոգու ընդունել կուսակցության շարքերը: Շատ կուզենայի, որ այդ «դասական կուսակցությունը» այդ նույն Իջևանում 10 հոգու համար աշխատատեղ ստեղծած լիներ: Այդ 3 «դասական, ավանդական կուսակցություններին» էլ ես շատ լավ եմ ճանաչում, դրանց կարելի է, այսպես, ոտքից գլուխ մերկացնել. չեմ հասկանում, թե Հայաստանի պետական մարմիններին կամ հասարակ ժողովրդին ի՞նչ պրոպագանդով են այսքան ժամանակ այսպես խաբուսիկ և կեղծ պատմություններով սնուցել ու այնպիսի իրավիճակի մեջ դրել, որ առեղծվածների մասին են մարդիկ մտածում: **Դրանց տարեկան բյուջեն և ընդհանուր շրջանառությունը մի քանի անգամ ավելին են, քան Հայաստանի Հանրապետության տարեկան բյուջեն:** Ու՞մ են խաբում, ինչու՞ են խաբում:

Հողից կտրված, օտարության մեջ «Հայաստան, հայկականություն, հայրենիք» իմաստավորմամբ կեղծ ու խաբուսիկ սերունդներ իբրև թե դաստիարակես ու այսօր երկրի մեջ 10 հոգու համար աշխատատեղ չստեղծես - ինձ համար անհասկանալի է: Ժամանակ առ ժամանակ հագած շոր-կոշիկ կուղարկեն մեր այդ հայրենակիցները, բայց այստեղ կարգին գործ չեն ստեղծի, տնտեսություն չեն զարգացնի, չեն օժանդակի, որ այստեղի մարդը՝ այստեղի մեր հայրենակիցը, իր արհեստով, իր գիտելիքով, իր իմացածով ապրի, ինքն իրենից մի բան տա և դրա դիմաց մի բան ստանա:

Սպասում եմ՝ 88 թիվ, 90 թիվ, 2000 թիվ և արդեն 21-րդ դար. նույն լոլոներն են, նույն հեքիաթներն են ամեն տեղ, ոչինչ չի փոխվում, ավելին՝ դեպի վատն է գնում: Եվ եթե մեկը կարծում է, որ սրա պատճառն անկազմակերպ լինելն է, շատ է սխալվում: Հարկ է, որ բոլորն իմանան, թե այդ «կուսակցությունները» շատ էլ լավ ներքին կազմակերպվածություն ունեն, նույնիսկ կարող են այլոց օրինակ հանդիսանալ: Բայց այդ ամբողջ կազմակերպվածության արդյունքն ի շահ Հայրենիքի ոչ մի՝ ի՛նչ հոգևոր, ի՛նչ բարոյական, ի՛նչ ֆինանսական, ի՛նչ տնտեսական ոլորտում չի երևում:

**Իսկապես արժեքների այլասերման համակարգում ենք գտնվում:** Ինձ համար մեծ դժբախտություն է, բայց չեմ կարողանում բացատրել դա: Ու երբ պատասխաններ էլ գտնում եմ, այդ գտածներս ամոթալի են լինում ինձ համար:

Ես Սփյուռքում եղել եմ ռազմական մի կառույցի հավատարիմ անդամներից: Այդ կազմակերպությունն Արևմտյան Հայաստանի համար արյուն է թափել: Այդ զինյալ պայքարը 70-80-ականներին արտասահմանում թուրքական դիվանագետների զգետնման գործն է կատարել: Ուրեմն, դրա առաջամարտիկներից մեկը, որ թուրք դիվանագետ է սպանել, դրա համար Եվրոպայում ձերբակալվել, դատվել ու 10-12 տարի բանտում է եղել, այդ զրկանքներից հետո Հայաստանի պետության կողմից գրկաբաց ընդունվել է, բանտից ուղղակի տեղափոխվել է Հայրենիք, ապա զենքը ձեռքին կամավոր գնացել է Արցախ, կռվել է Շահումյանի ու Մարտունու շրջաններում, Երևան վերադառնալուց հետո էլ ընտանիք է կազմել, այսօր հեռացել է երկրից: Զրկանքները գիտակցաբար կրած այդ հայորդին Green ard է խաղացել, ինչպես առօրյա լոտոներն են խաղում, շահել է և այդ շահած լինելու ուրախության մեծ հանգամանքով՝ Հայաստանի Հանրապետության մայրաքաղաք Երևանում ստեղծած ընտանիքն էլ հետը վերցնելով՝ թռել-գնացել է Լոս Անջելես, և չգիտեմ հիմա որ ետին թաղամասերի սրճարաններում, ինչպես Հայաստանում է ընդունված ասել, անգործ ֆռֆռում է:

Հիմա, եթե աշխարհում կա մի հայ մարդ, որ կարողանա ասվածի վերլուծությունն անել և այս եղածին խելամիտ որևէ բացատրություն տալ, թող առանց ինքնախաբեության անի դա:

Արժեքների այսքան այլասերում և կեղծիք պատահական լինել չեն կարող: Մարդ, որ գնում է զինվորական գործողություն կատարելու, որտեղ իրեն կարող էին խփել ու սպանել, մարդ, որին և՛ Սփյուռքում, և՛ Հայրենիքում հարգում էին ու սիրում որպես ազգային հերոսի, հանկարծ հեռանում է երկրից: Ծայրահեղացնեմ՝ գնում է մի պետություն, որը պահում է Թուրքիային. այն Թուրքիային, որի դեմ կռվելու համար նա բանտում է թողել իր երիտասարդությունը: Սա անհասկանալի երևույթ է: Այսքան ծայրահեղ օրինակը ես դիտավորյալ եմ տալիս, որ հասկանանք հայի կերպարը, հայի տարօրինակությունը: Այսպես միայն մեզ մոտ կարող է լինել: Այսքան չգիտակցված ապրել, այսքան իմաստազուրկ ապրել՝ կարծես թե միայն մեզ մոտ է լինում: Կարծում եմ, որ **մեր բոլոր դժբախտությունների մեջ մե՛նք ենք մեղավոր, միայն մենք և էլի միմիայն մենք:**

Ես հայագիտություն եմ սերտել ու մեր պատմության մեջ չեմ գտել գոնե մեկ հատիկ ժամանակաշրջան, մեկ տարի, մեկ դեպք, որտեղ մեզ հետ կատարված որևէ դժբախտության մեղավորը մենք չլինենք: Մենք ամեն ինչ անում ենք, որ տուժենք, հետո էլ նստում լաց ենք լինում՝ ինչու՞ այսպես եղավ:

Քիչ առաջ ասում էի, թե ծեր ազգ ենք: Ախր, ծերության իմաստով էլ շատ ենք տարօրինակ: Արտասովոր երևույթ է մեր ծերությունը: Ծերերը երկար ապրելով՝ արդեն հասուն մարդիկ են լինում, իմաստնացած են լինում: Ասենք, 60 տարեկանը 20 տարեկանին կարող է ասել. «Գիտե՛ս, տղաս կամ աղջիկս, այսպիսի բաները մենք տեսանք՝ դուք չանեք»: Իսկ մեր ամբողջ պատմության մեջ ոչինչ չի փոխվել: **Այսքան սխալ գործել, այսքան սխալ ապրել, այդ սխալների պատճառով այսքան տուժել, տուժել ու նորից տուժել, և ոչինչ չսովորել՝ բացի հայից ուրիշ ոչ մի քաղաքակրթություն, ազգ կամ ժողովուրդ չի՛ ունեցել մեր մոլորակի վրա:** Մենք մեզ ոչ թե իմաստնացած ծերի, այլ մանկամիտ զառամյալի պես ենք պահում:

Քիչ վերևում այդ «ավանդական կուսակցությունների» մասին մի փոքր արհամարհանքով նշեցի, որովհետև ինչպե՞ս կարելի է 1890-ականներին այդքան սխալներ գործել, հարյուր հազարավոր մարդկանց ցեղասպանության հասցնել, 1918-20 թթ. երկրում այդքան սխալներ գործել, ապա խայտառ կործանման եզրին հասցված Հայրենիքից ելնել ու փախչել (նույնիսկ չապրել այս պետությունում. ոչի՛նչ որ սիստեմը փոխվում է՝ բայց ապրիր քո՛ տանը), ու հիմա վերադառնալ և դարձյալ նույն ավետարանը կարդա՞լ, չփախածի գլխին քարո՞զ կարդալ: Ես դա չեմ հասկանում: Իսկապես ոչինչ չեմ հասկանում: Ուրեմն՝ այդքան սխալ գործած ծերունին դեռ ոչինչ չի հասկացել:

Սա՛ է հայը, սա՛ է հայ ազգը, սա՛ է իմ ժողովուրդը, սա՛ եմ ես, սա՛ ենք բոլորս: Ես այսպես եմ տեսնում, այսպես եմ մտածում, այսպես եմ գործում, բայց ի՞նչ կարող եմ անել. քանի որ այսպես մտածողները տեղ չունեն հայի այսօրվա հասարակությունում:

Այսօր հայն իր հայրենիք իբրև տուրիստ չի գալիս, ուրեմն ինչի՞ մասին է խոսքը: Մի կողմ թողնենք նույնիսկ տնտեսական ներդրումները, որ եթե մակաբույծ օրգանիզմ չէ, ապա այդ **պարտքը** կգիտակցեր ինքնաբերաբար: Հայերն արտասահմանում մոտ 6-6,5 միլիոն են: Եթե ընդամենը 1 միլիոն ընտանիքների անդամներից մեկը՝ մեկի աղջիկը, մյուսի տղան, թոռնիկը, քույրը, եղբայրը, եթե ընդամենը մեկ շաբաթով տուրիստ գան Հայաստան, ուրեմն Հայաստանի պետական բյուջեն համալրված կլինի: Այսքան հեշտ, հանգիստ և պարզ թվաբանություն: Բայց այդ պարզն այսօր հայը չի կարողանում ըմբռնել, քանի որ նա ձև է անում, թե Հայրենիքի **պահանջ** ունի, նա անարմատ ու անառագաստ ոմն է, որ գնալու տեղ չունի, որ ուխտատեղի չունի: Այդ ուխտ և ուխտատեղի չունեցողի համար միևնույնն է՝ ինքը ո՛ր աշխարհամասի ո՛ր երկիրը կգնա արձակուրդի, ո՛ր երկրի տաճարները, հյուրընկալ վայրերը կտեսնի: Ցանկացածինը, բայց ո՛չ Հայաստանինը, որովհետև Հայաստանը իր վզից կախված մի ծանր քար է, որն իր գոյությամբ ամեն վայրկյան ամաչեցնում է իրեն, հիշեցնում **պարտքի** մասին: **Իսկ ինքը պարտքից խուսափող է, փախչող է, ուրիշի մարած պարտքերով ապրող է:** Այս հարցը մտածելու և լուծելու ուղղությամբ ի՛նչ Սփյուռքում, ի՛նչ Հայրենիքում, վստահ եմ, ոչ ոք չի մտածում:

Այս առթիվ չի մտածում նաև մեր եկեղեցին՝ իր երկբևեռ կենտրոններով հանդերձ: Սփյուռքում հաճախ ենք լսում «Երեխային Անթիլիասակա՞ն, թե՞ Էջմիածնական եկեղեցում եք կնքում» հարցը: Ամենաանհեթեթը, որտեղ որ էլ հայ երեխային կնքելու լինեն, Սփյուռքում նա ինչ հայ է դառնում, ինչ էլ՝ հայ քրիստոնյա: Որովհետև իրեն կնքող եկեղեցականն էլ հեռու է հայ քրիստոնյա լինելուց, ուր մնաց նրա կնքածը լինի: Ո՛չ: Սա ավելի, հոգեպես շատ ավելի ծանր իրավիճակ է: Մեր եկեղեցին, այսինքն Վ. Թեքեյանի «եկեղեցին», այժմ չի գտնվում իր հոգևոր ու մարդկային արժեքների միջավայրում: Դա, ափսոս, խարդավանքների, մեկը մյուսի տակը փորելու կամ շահագործության, Մաքիավելուն հատուկ սատանայությունների, դավերի և մեքենայությունների ամենագործուն վայրն է արդեն: Իսկ սատանայությունը եկեղեցում ինչպե՞ս հասկանալ. հենց դրա համար էլ այսօրվա իրավիճակում ենք գտնվում: Հայ եկեղեցին 1956 թ.-ից պառակտած հարյուրքանիտարվա «ազգային» կուսակցությունը Կիլիկիո կաթողիկոսությանը վերաբերվում է ինչպես հասարակ խանութպանը իր խանութին, որպես իր սեփականությանը կվերաբերվեր: Դա նաև դարձել է լուրջ եկամուտ ապահովող աղբյուր, որտեղից հոգեկան սնունդի տեղ աշխարհի ամենակեղտոտ բանը՝ փողն է ծորում:

Ձնայած իրականության մեջ բացի նորաստեղծ Երրորդ Հանրապետությունից ոչինչ չունեցող հայերիս համար՝ ամեն ինչ պահեստավորելու ավանդական սովորույթի համաձայն՝ ձմեռը մի կերպ անցկացնելու պաշար կուտակողի օրինակով, մենք հիմա ունենք երկու եկեղեցի՝ երկու կաթողիկոս, երկու հոգևոր կենտրոն (բարեբախտաբար մեկը գտնվում է ՀՀ սահմաններից ներս), երկու պետություն, երկու հիմն, երկու զինանշան և երկու դրոշակ: **Սփյուռքահայն այսպես թե այնպես ունեինք, հիմա արհեստականորեն ստեղծում ենք նաև «հայաստանցուն» և «ղարաբաղցուն»:** Ինչ էլ լավ է, չէ՞: Ուրիշները մի հատ չունեն, մերն ամեն ինչից երկու հատ է: Հիմա ինչպե՞ս վարվենք, քանի երկուսն էլ մերն են՝ ուրեմն դրանք պիտի պահենք: Բայց մենք ոչինչ էլ չենք պահում, օտարները մեր փոխարեն պահում են «մեր ամեն ինչը»՝ այլասերելով դրանք: Երբ ազգիս հոգևորականների մեծ մասը, աշխարհիկի կարգավիճակով մանր շահերի հետևից է ընկել, եկեղեցու մասին

լուրջ խոսք լինել չի կարող երբեք: Այդ իսկ պատճառով էլ, մեր առնվազն վերջին երկու «Ամենայն Հայոց»-ները չեն ընտրվել, այլ պետական իշխանությունների կողմից **նշանակվել են,** իսկ վերջինի ընտրությունը՝ 27 հոկտեմբեր 1999 թ. պատմական պատահականությամբ թե երկնքի զայրույթով՝ արյան է համընկել...

Եվ երբ այս ամենը գիտակցելով ես նայում շուրջ բոլորդ ու փորձում հասկանալ իրականության իրական պատկերը, ոմանք անգիտակցորեն քեզ արհամարհում և բանի տեղ չեն դնում: Իսկ դու ոչ թե չորքոտանի, այլ մարդ ես: Առաջ, երբ որևէ մեկն ինձ էշի տեղ էր դնում, կամ ինձ էր թվում՝ թե էշի տեղ են դնում, ես կռիվ էի անում: Հիմա արդեն չեմ կռվում. **կռիվը դադարեց, կռիվն այլասերվեց:** Ամեն ինչ արժեզրկված է և առուծախի վերածված: Կռի՛վն է արդեն այլասերվել:

Չեմ կարողանում պատկերացնել մի ժողովուրդ, որի դեռատի երեխաներն իրենք իրենց մարմինը վաճառելով ապրեն: Վաճառվեն հանրապետությունում ու նրա սահմաններից դուրս, արաբական երկրներում, մինչևիսկ Թուրքիայում: Այդ դեպքում ինչի՞ համար էին այսքան զոհերն ու զոհողությունները. դա կանեին 100 տարի առաջ ու վերջ: Ես դա չեմ պատկերացնում: Սա ազգությունից, ամեն ինչից դուրս բան է: Եվ դա չի նեղում ոչ մեկին, հատկապես սփյուռքահայերին չի նեղում, նրանց չի հուզում: Եվ մենք գիտակցաբար դառնում ենք սփյուռքահայ: **Հայաստանի Հանրապետության քաղաքացիներն ու արցախցիներն են դառնում սփյուռքահայ, տեսնում են վատը ու գնում դեպի վատը:**

Սփյուռքում ես իմ ընտանիքի անդամներին, ընկերներին, բոլորին միշտ ասում եմ. «Գիտե՞ք ինչ, դուք ձեր երեխաների համար այստեղ պատրաստում եք շատ սիրուն գերեզմաններ: Դուք ձեր երեխաների ապագայի համար չէ, որ ապրում եք Լոս Անջելեսում կամ մեկ այլ տեղում. եթե այդպես եք ասում՝ սու՛տ եք խոսում: **Դուք նույնիսկ Լոս Անջելեսում էլ չեք ապրում, դուք ապրում եք գետտոյում»:** Չկա՛ մի հայ, որ կարողանա հակառակը համոզել, ես պատրաստ եմ բանավիճելու և ապացուցելու: Եթե կգտնվի մի «համարձակը», որ կասի. «Իմ ապրած երկրում ես իմ երեխայի ապագան եմ կերտում, և դա շատ լուսավոր ապագա է», նա պարզապես ստում է: Նա խաբում է, և միմիայն՝ ինքն իրեն: **Նախ՝ ինքն իր երեխայի լեզուն է կտրում, մոռացնում է հայերենը, զրկում է պատմությունից, դարձնում է մանկուրտ, հիվանդ և արհեստական մարդ, որ վտանգավոր է ոչ միայն հայի, այլև ամբողջ մարդկության համար:** Ապա, ամեն ինչ մի կողմ թողնելով, իբրև անասունի օրինակը բերենք. զավակին կտրում է իր պապիկից, տատիկից, մորաքրոջից, հորեղբորից, նրան ապրեցնում է մի գետտոյի մեջ, ուր դառնում են նարկոման, հանցագործ, ուր ոչ ևս են դառնում:

Գերեզման է դա. հիմա արդեն Լոս Անջելեսում, Կանադայի Մոնրեալ ու Թորոնթո քաղաքներում և այլուր կան հայկական գերեզմանատներ. առաջ չկային, հիմա՝ կան: Այստեղի մարդիկ, իրենց հարազատների գերեզմանները թողած՝ գնում են իրենց ու իրենց սերունդների համար այնտե՛ղ գերեզմանատեղեր ապահովելու:

Այսքան ինքնասպանության, անձնասպանության ո՞վ կարող էր այսպես կամավոր գնալ՝ բացի հայերից: Ես չեմ հասկանում, ո՞վ կարող էր ինքնագոհության համար այդքան ռազմական գործողություններ կատարել 19-20-րդ դարագլխին. մի քանի հոգով կգնային մի քանի թուրքի հերը կանիծեին, իսկ որ իրենց այդ անպատասխանատվությամբ հարյուր հազարավոր մարդկանց զոհվելու պատճառ կդառնային, դրանից չէին հուզվի ու ցավ չէին ապրի: Ես կարող եմ գնալ մի թուրքի քիթն ու մռութը ջարդել, բայց դրանից հետո, եթե թուրքը գալու է իմ վեց հատ գյուղն է վերացնելու, ուրեմն ես այդ վեց գյուղի հայ բնակչության կյանքի հետ եմ խաղում այսքան հեշտ:

Հիմա Հայաստանից գնում են ու կամավոր դառնում սփյուռքահայ: Այստեղից գնացած մարդկանց էլ եմ այնտեղ տեսել, ճանաչել: Գնացողը եթե այնտեղ թափած ջիղ ու քրտինքի, ուր ո՛չ լեզու ու կարգավիճակ ունի, ո՛չ տուն ու անկողին, ապրում է նվաստացուցիչ պայմաններում լինելու պատրաստակամությամբ, գետնին ընկածի համակարգում, եթե մեկ տոկոսը թափեր Հայաստանում, իսկապես եմ ասում, կապրեր շատ նորմալ, բնականոն, մարդկային պայմաններում:

Եվ այս ամենը մեր ճակատագիրը չէ, այլ մեր անընդունակությունների, տհասության և տգիտության գործուն լինելու պատճառով է: Ու դա գալիս է այն բանից, որ մենք չունենք քաղաքական գործիչ, մենք չունենք հոգևոր գործիչ, մենք չունենք ռազմական գործիչ, մենք չունենք ժողովուրդ: Մենք չունենք, բայց կարծես թե ունենք: **Սփյուռքյան իրավիճակին է հասնում Հայաստանը:**

Սփյուռքն ասում է. «Ես կամ, նայի՛ր իմ համակարգը»: Բայց իրականում ինքը չկա, ինքը ոչնչով չկա, իրեն բանի տեղ դնող չկա ընդհանրապես: Ինքն իրեն բանի տեղ չի դնում, ուր մնաց թե ուրիշն իրեն բանի տեղ դնի: Հիմա Հայաստանի Հանրապետությունը դարձավ Սփյուռք... Իսկ այդպիսի պետություններին ասում են **բանանային հանրապետություն,** շատ դժբախտաբար:

# Հ. Գ. ՊԱՐՏՔԻ ԵՎ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ

Պետականության հաստատումից ի վեր պիտի գտնվեր մի սփյուռքահայ (թեև մեծ մեղք է Կիլիկյան Հայաստանում ծնված, հայկական կրթություն ստացած, Արցախյան պատերազմին կամավոր մասնակցած, Հայաստանի Հանրապետության հռչակումից առաջ Հայաստանի մշտական բնակիչ դարձած ու միայն հանգամանքների պարտադրանքով 10 տարի Եվրոպայում անցկացրած ազնիվ, լուսավոր ու խիզախ հայորդուն սփյուռքահայ անվանելը), որ բարձրաձայներ ահավոր դառը ճշմարտությունները:

Հայրենահայությունն այսօր իր ճակատագրական ընտրանքն ունի, ու եթե սխալ կատարեց իր հաշվարկները, ապա անդարձ է լինելու կորուստը. թեկուզ մանևրային նահանջի՝ այլևս հնար չունի հայը: Վարվե՞նք տոնական ջայլամությամբ - դրա համար տեղ չի թողնում հեղինակն իր մերկ փաստերով ու փաստարկներով:

Սփյուռքի մեծագույն մասը մերժում էր Խորհրդային Հայաստանը, որ մենք նույնացնում էինք խորհրդային կարգերի մերժման հետ: Բայց Հայաստանի հանդեպ վերաբերմունքը կարծես թե չի փոխվում, պահանջատիրությունը շրջվել ու ներկայացվում է Հայաստանին: Դաժան է, բայց այսօր արդեն փաստ, որ Խորհրդային Հայաստանը Սփյուռքին ավելի էր «հարազատ», քանի որ հնարավոր էր Հայրենիքի խորհրդային լինելով պատճառաբանել հրաժարումը Հայաստանից, հնարավոր էր պատճառաբանել դասալքությունը, որդիական պարտքի չվճարումը. դրա համար էլ, երբ Հայաստանի բնակիչները որոշել էին դուրս գալ ԽՍՀՄ-ից և անկախ պետություն կերտել, սփյուռքյան կուսակցությունները, չգիտես որ իրավունքով, դեմ էին դրան. հիմա էլ դեմ են՝ դեռ չեն հաշտվել անկախ Հայրենիքի գաղափարին, մանավանդ երբ այդ Հայրենիքն իրենց շրջաբերականներով չի կառավարվում, այլ սեփական շահի գիտակցման տարտամ փորձեր է անում:

Մի՞թե ճիշտ էր Լոուրենս Արաբիացին, երբ ասում էր, թե հայերն այդ հողերն ուզում են, որպեսզի արտոնագրությամբ վարձու տան ուրիշներին ու, ի հաշիվ ստացած վարձի, ապրեն ծովեզրին, քաղաքներում ու զբաղվեն արժեթղթերի առք ու վաճառքով:

Չէր սխալվել Վիլյամ Սարոյանը, երբ 1966-ին Ալեքսանդրեթի գերեզմանոցում իրեն ուղեկցող 4 տարեկան Սարգսի համար ասել էր, թե Մեծ մարդ է դառնալու: Եվ այդ մեծությունը պետք չէ փնտրել ո՛չ նրա ծագման, ո՛չ դաստիարակության, ո՛չ ԱՍԱԼԱ-ական անցյալի, ո՛չ մինչևիսկ Արցախյան պատերազմի զինյալ մարտիկ ու վավերագրող մտավորական լինելու մեջ, այլ հայության ու հայ պետության առջև դրված խնդիրների սթափ գիտակցման ու քաղաքացիականության մեջ:

Բազմապատիկ արժեքավոր են քաղաքացու, սփյուռքահայի, եկեղեցու, պարտքի, իրավունքի, բարոյականության մասին Սարգիս Հացպանյանի դատողությունները, քանի որ դրանք **առաջինն** են. առաջինն են իրենց անկեղծության ու լրջության մեջ: Գուցե այսքան պարզ ու այսքան չընկալվող ճշմարտությունների այսքան ազնվական մատուցու՞մը ստիպի առանց ծեքծեքումների նայելու իրականության ուղիղ աչքերի մեջ: Տա՛ Աստված:

Դառն են Սարգիս Հացպանյանի ճշմարտությունները, որոնց գիտակցումն իսկ սարսռեցնում է: Մերն է ընտրելու իրավունքը - կուլ տալ բուժիչ այդ դառնահա՞բը, թե՞ երանությամբ տրվել տաք ավազանում երակները բացածի մահացու արնահոսությանը:

*Միքայել ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

## Արարատ Ալեքսանդրի ՓԱՇԱՅԱՆ

Ծնվել է 1951 թ. Հայաստանի Սպիտակի շրջանի Նալբանդ (Շիրակամուտ) գյուղում` Սիրիայից հայրենադարձվածի ընտանիքում: Բրյանսկի պետական ինժեներա-տեխնոլոգիական ակադեմիայի քիմիայի ամբիոնի վարիչ: Քիմիական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր: 100-ից ավելի գիտական աշխատությունների, 20 գյուտերի և արտոնագրերի (պատենտների) հեղինակ: «Գործարար» ամսագրում հրատարակվել են նրա հրապարակախոսական հոդվածները, պատմվածքները և գրական, փիլիսոփայական ուրվագծերը ինչպես հայերեն, այնպես էլ ռուսերեն լեզուներով:

Հանդիսանում է Բրյանսկի մարզի Հայկական համայնքի առաջին հիմնադիրներից և առաջնորդներից մեկը: Բրյանսկ քաղաքում հրատարակել է «Կռունկ» հայկական թերթը:

Հասարակական գործիչ է:



*Արարատ ՓԱՇԱՅԱՆ*

# ՄՈԼՈՐՎԱԾ ԳԱՌՆՈՒԿԸ

Հայրենադարձ Հարությունի մահվան բոթը Լոս-Անջելոսից հեռախոսային լարերով ծռմռվելով ու բազմալեզու հեռախոսավարուհիների արգելքները հաղթահարելով եկավ, հասավ Երևան, թառեց-ծվարեց Արաբկիրի երկհարկանի մասնավոր տների թիթեղապատ տանիքներին, սողոսկեց ներս` բնակարանները և դարձավ համընդհանուր քննարկման առարկա:

Դեռ մի ամիս էլ չէր անցել, երբ նա` արդեն չորս տարի Ամերիկայում բնակվող Հարությունը այցելել էր Երևան, իր լքած ընտանիքին` կնոջը և չորս երեխաներին տեսակցության:

Հարությունի հանկարծակի մահը, բնականաբար, առաջինը իմացան նրա կինը և երեխաները, և հետո, նրանց տնից տարածված սուգ-վայնասունը սթափեցրեց շուտ զարթնած և իրենց ավանդական առավոտյան սուրճը դեռ խմել չհասցրած Արաբկիրի, այդ ծուռումուռ, բայց գեղեցիկ և սրբատաշ քարերով կառուցված տներով երիզված փողոցի բնակիչները:

Փողոցի ամբողջ բնակչությունը, նույնիսկ նրանք, որոնք վերջերս էին վերաբնակվել այդ թաղում հայրենաթող հայրենադարձների դատարկված տներում, առավոտ կանուխ արդեն խմբվել էին Հարությունի նախկին տանը և փորձում էին մխիթարել աղջիկներին և հատկապես կնոջը: Վերջինս կարկամել ու չորացել էր անհավատալի և ահավոր լուրից այն աստիճան, որ բացի դեմքի մկանի ցնցումներից և ատամները ամուր սեղմելուց ոչինչ ի վիճակի չէր անելու: Չէր կարողանում լաց լինել: Ուժ չուներ:

Հանգուցյալի այրին` Արմենուհին, հավասարակշռված, խելոք և ուժեղ կամքի տեր կին էր:

Երբ 1946-ին հայրենադարձած 20-ամյա Հարությունի հետ նրանք ընտանիք կազմեցին, համեստ ու խղճուկ հարսանիքից մեկ ամիս չանցած Հարությունը մեղադրվեց որպես դաշնակցական-նացիոնալիստ և աքսորվեց Սիբիր: Չհասցնելով անգամ ըմբոշխնել մեղրամիսի քաղցրությունը, Արմենուհին մնաց առանց ամուսին:

Շատ չանցած, դեռևս մանկամարդ ու դեռատի Արմենուհին չլսելով հարազատների հորդորներին, մոր աղաչանքներին և հոր սպառնալիքներին, ճանապարհ ընկավ դեպի Սիբիր` իր երիտասարդ ամուսնու հետքերով:

Եվ հեռավոր, ցուրտ Սիբիրում ծնվեց նրանց առաջնեկը` Հայկուհին, «դաշնակ ու նացիոնալիստ» սոցիալական ծագմամբ:

Մյուս երեք աղջիկները ծնվեցին հայրենիքում` արդարացված և ընտանիքով հայրենիք վերադառնալու թույլտվություն ստացած հայրենադարձ Հարությունի Արաբկիրում հիմնադրած տանը: Այն նույն տանը, որտեղ այժմ անսպասելի հարվածի ցավից կքած ու որբացած Արմենուհին միտք էր անում ինչ անել: Կինոնկարի ժապավենի պատկերների պես նրա երևակայության մեջ Հարությունը հառնում էր մերթ որպես ժպտերես, ուրախ ու կենսախինդ փեսացու, մերթ սիբիրյան անտառահատի տեսքով` զրկված որևէ լավատեսությունից ու քնքշանքից, մերթ...

Որքան էլ ուզեց պատկերացնել մեռած` չհաջողվեց: Վերջին հրաժեշտից տպավորված նրա թախծոտ ժպիտը սևեռվել էր Արմենուհու ուղեղում, ինչպես ճնշող, խանգարող երաժշտություն, որի մեղեդու հնչյունների տակ դժվար է դառնում վերարտադրել ուրիշը:

... Որքան էլ հորդորեց Հարությունը Արմենուհուն միասին` ընտանիքով Ամերիկա մեկնել` Արմենուհին մնաց անդրդվելի: Փառք աստծո, աղջիկները արդեն հասուն էին և մոր տեսակետին էին:

*- Հասկացիր, եկանք հայրենիք այն վայելելու, սակայն Հեռավոր Սիբիրում անհետք, անգերեզման թաղեցինք մեր երիտասարդությունը: Գոնե մեր կյանքի վերջին մի քանի տարիները վայելենք` չապրած երիտասարդ տարիների վրեժը գոնե այդպես հագեցնենք:*

*- Հայրենիքը ո՛չ շուկայում վաճառվող ապրանք է, որ հավանես կամ չհավանես, ո՛չ էլ սեթևեթող պչրուհի, որ խռովես ու թողնես հեռանաս: Խելքի եկ, Հարություն,* - թախանձում էր Արմենուհին...

Հարությունի հետ կապված հուշերի կինոժապավենը հանկարծ կտրվեց Արմենուհուն հղացած մտքից, որը սևեռվեց և մեխվեց նրա ուղեղում: Սգավոր ու կորացած Արմենուհին վեր կացավ, և վճռական, ճշգրիտ որոշում կայացրած մարդու հաստատակամությամբ ուղղվեց դեպի պատշգամբում ծխող տղամարդիկ:

*- Ի՞նչ եք շվարած կանգնել: Պետք է Հարությունի թաղումը կազմակերպել: Մի՞թե անշիրիմ ենք թողնելու նրան:*

Խմբված տղամարդիկ միանգամից չհասկացան, թե խոսքն ինչի մասին է, և որոշ ընդմիջումից հետո զարմացական բացականչությունները վկայում էին այն մասին, որ նման տարբերակ ոչ մեկը չէր սպասում: Ներկա գտնվողներից ոչ մեկը նման աննախադեպ փորձ չուներ` առանց հանգուցյալի թաղում կազմակերպել...

Արմենուհու հաջորդ առաջարկությունը լրիվ շշմեցրեց նրանց:

*- Պետք է շտապ դագաղ հայթհայթել և գերեզմանի փոսի հարցը լուծել: Հարությունին կթաղենք Ջեյթունի գերեզմանոցում, նրա հոր և մոր մոտ: Երբ դեռ Հարությունը այստեղ էր, ծնողների գերեզմանը խնամելիս միշտ ցույց էր տալիս դատարկ մասը և նշում, որ դա մեր համար է նախատեսել:*

Որոշ կարճատև իրարանցումից և քննարկումներից հետո տղամարդիկ բաշխեցին պարտականությունները միմյանց միջև և յուրաքանչյուրը գնաց իր գործին:

Շուտով հասան տագնապալից լուրեր: Առաջինը ներս մտավ հարևան Վռամը և դեմքի անորոշ արտահայտությամբ Արմենուհուն հաշիվ տվեց, որ առանց մահվան վկայականի դագաղ չեն տալիս:

*- Ինչ հնարավոր էր, արեցի, նույնիսկ մաղարիչ խոստացա, բայց չստացվեց:*

Դագաղի համար մաղարիչ, մտքում քմծի-

ծաղեց Արմենուհին, սակայն պահպանելով դեմքի լուրջ արտահայտությունը, դիմեց տղամարդկանց:

*- Մի՞թե մի դագաղ մեր ուժերով չենք կարող պատրաստել: Էլ որ օրվա տղամարդիկ եք:*

Տղամարդիկ սկսեցին քննարկել ստեղծված իրավիճակը և քանի որ բոլորն էլ նախխնամության վախ ունեին, որոշվեց դագաղը պատրաստել հենց Հարությունի տան բակում:

Բարեբախտաբար, հարևան Վրեժը ատախձագործ էր, և մանր-մունր հարցերը լուծվեցին առանց բարդությունների: Նրա տնից քարշ տալով բերեցին փայտերը և գործը սկսեց եռալ: Մեկը հարթեցնում էր փայտը, մյուսը՝ սղոցում:

Դագաղի չափսերը որոշվեց Արմենուհու անմիջական մասնակցությամբ՝ ճիշտ Հարությունի չափսերով:

Հաջորդ խոչընդոտը հաղթահարելը ավելի դժվար եղավ: Գերեզմանի փոսն էլ, ինչպես պարզվեց, առանց մահվան վկայականի հնարավոր չէր փորել:

Գերեզմանոցի պետը Հարությունի վաղեմի ծանոթն էր և Արմենուհին ստիպված եղավ նրան դիմելու անձամբ:

Ի վերջո, երկար բանակցություններից հետո, երեք հարյուր ռուբլով գործը գլուխ եկավ:

Հոգսերով ծանրաբեռնված Արմենուհին համարյա մոռացել էր վիշտը:

Մեռելահացի պատրաստությունները իրենց վրա վերցրին հարևանները և թվում էր, էլ ուրիշ հարցեր չկան, երբ հանկարծ հարևան Վռամի կինը՝ Տիրուհին հարցրեց.

*- Իսկ դագաղը դատա՞րկ պիտի տարվի գերեզմանոց: Արդյոք նման բան հնարավոր է:*

Արմենուհին ցավից տնքաց: Այդ մասին նա դեռ չէր հասցրել մտածել:

Կարճատև մտորումներից հետո, Արմենուհին այդ հարցին էլ լուծում գտավ:

Սակայն արդեն բավական հոգնել էր լարվածությունից և շարժումները դանդաղել էին: Դրա պատճառով էլ թվացող հանդիսավորությամբ նա տեղից վեր ելավ, առանց շտապելու անցավ սենյակի մյուս ծայրը, զգեստապահարանից իջեցրեց հնաոճ ճամպրուկը և հարևանների հետաքրքրասեր և մի քիչ էլ զարմացած հայացքների ներքո հանդիսավորությամբ բացեց այն:

Եվ այստեղ, առաջին անգամ այդ օրվա ընթացքում չկարողացավ զսպել իրեն և ճամպրուկի բացված կափարիչին հենվելով լիաթոք լաց եղավ, որը հետո վերածվեց ծանր տնքոցների:

Սենյակում տարակուսած հարևանների շշուկի ալիք անցավ: Կանայք վախեցած իրար էին նայում և հայացքով միմյանց հարցնում՝ հո չի խելագարվել:

Հետո տիրապետելով իրեն, դողդողացող ձեռքերով հանեց այնտեղից սիբիրեցի անտառահատ Հարությունի հնացած և ժամանակի ընթացքում ավելի խղճուկ տեսք ստացած շորերը՝ կաշվե ճտքավոր կոշիկները և բամբակյա շերտավոր բաճկոնը:

Երեկոյան մոտ, երբ արդեն բոլոր հավանական և անհավանական ծանոթներն ու բարեկամները Հարությունի մահվան լուրը լսելով հավաքվել էին նրա տանը, դագաղը արդեն պատրաստ էր...

Մնացած արարողությունները կատարվեցին սովորականի նման: Ինչպես իսկական թաղումներին է հատուկ: Երբ Հարությունի դագաղը՝ մեջը նրա սիբիրյան հագուստները, ներս բերվեց տուն, իսկական սուգ-վայնասուն սկսվեց: Աղջիկները պինդ գրկել էին մորը և գլուխները նրանց սնուցած կրծքում թաղած ցնցվելով հեկեկում էին: Արմենուհին, շոյելով նրանց գլուխները, ինքն էլ ձայնակցում էր նրանց:

Ինչպես ընդունված կարգն է, Հարությունի «դին» գիշերը մնաց տանը՝ շրջապատված սգավոր կանանցով, մոմի դողդոջուն լույսի տակ:

Մյուս օրը ամեն ինչ պատրաստ էր թաղումը կատարելու համար, ներառյալ նաև մեռելահացի պատրաստությունները:

Ամեն ինչ կատարվեց ընդունված կարգով, նույնիսկ լարային քառյակ և փողային նվագախումբ կար: Սուգը հատկապես սաստկացավ դագաղը տնից հանելիս: Քիչ էր մնում Արմենուհին ինքնատիրապետումը կորցներ: Նրան ավելի շատ խորտակում էր աղջիկների աղեկտուր լացը:

Հոգեհացի ժամանակ ասվեցին խոսքեր, պատմվեցին Հարությունի կյանքի մանրամասները, ողորմաթասեր խմվեցին, մխիթարեցին հանգուցյալի ընտանիքին, և ուշ երեկոյան միայն տունը դատարկվեց:

Յոթնօրեքի և քառասունքի արարողությունները նույնպես իրենց բովանդակությամբ շատ չտարբերվեցին իրենց նախորդներից:

Եվ հետո, Արմենուհու կյանքը շարունակվեց իր հունով, առանց էական փոփոխությունների, չհաշված այն, որ նա ամեն շաբաթ այցելում էր Հարությունի շիրիմին, որտեղ արդեն իր համեստ կարողություններով երկու շիրմաքար էր տեղադրել:

Գրանիտյա սրբատաշ քարերից մեկին փորագրված էր.

«Մոլորված գառնուկիս» Հարությունի ու մայր հողին չարժանացած հանգուցյալների հիշատակին»:

Մյուս շիրմաքարը բովանդակությամբ ավելի աղքատ էր՝ բացի անուն-ազգանունից գրված էր 1929 - ...

***Սեպտեմբեր 1986 թ.***
***ք. Երևան***

## 6➲ Դարերով միասին

նում ինչպես ամիսը մեկ, այնպես էլ ավելի հաճախ, կախված գյուղատնտեսական աշխատանքների սկսվելուց: Ժողովները հրավիրվում էին միայն աշխատանքային օրերին, յուրաքանչյուր ծխից մեկն իրավունք ուներ ժողովում ներկայացնել ընտանիքին հուզող խնդիրները: Հիմնականում մասնակցում էին 40-60 տարեկան տղամարդիկ: Ժողովը կայացած էր համարվում, եթե նրան մասնակցում էին ծխերի 2/3-ը: Երևանի նահանգապետը, 1916 թ. հրամանագիր է ստորագրում այսպես կոչված «20-ականներ»-ի մասին, այսինքն համայնքային ժողովներին պետք է մասնակցեր յուրաքանչյուր 20 ծխից մեկ անձ, ինչը սակայն, Նիկիտինո, Վոսկրեսենկա գյուղերի կողմից հավանության չարժանացավ, նկատի ունենալով բնակչության փոքր քանակը: Ժողովներում ընտրում էին համայնքի ղեկավարներին՝ գյուղապետին կամ կոմիսարին, նրա օգնականին, հարկահավաքին, տասնապետին, գզիրին 3 տարի ժամկետով, իսկ 20-րդ դարի սկզբներին տեղի էին ունենում ամենամյա ընտրություններ: Գրագրի պաշտոնը վարձու էր: Գյուղապետի ընտրություններին ներկայացվում էին 3-4 թեկնածու, առավել բալեր հավաքածը համարվում էր ընտրված, ում տարիքը չպետք է ցածր լիներ 25-ից: Գյուղի ղեկավարները կրում էին հատուկ կրծքանշան, գյուղապետն ու դատավորը ունեին կնիքներ: 19-րդ դարի վերջին գյուղապետի կնիքի վրա պատկերված էր սև հարթության վրա երկգլխանի արծիվ ու կրճատ գրված. «Ալեքսանդրապոլի գավառի Նիկիտինո գյուղական համայնքի գյուղապետի կնիքը»: 1919 թ. կնիքի գրառումը հետևյալն էր. «Նիկիտինո գյուղական համայնքի կոմիսար»: Թե Նիկիտինո, թե Վոսկրեսենկա համայնքների գումարները գոյանում էին հարկերից, որ պարտավոր էր մուծել յուրաքանչյուր ընտանիք, վարձավճարներից, տուգանքներից, առևտրականների և արհեստավորների մուծումներից: Համայնքային ծառայողներ էին համարվում նաև մեծ հեղինակություն վայելող հավատարմատարները, ովքեր գյուղից դուրս ներկայացնում էին բնակչության հետաքրքրություններն ու պահանջները:

Այդպիսով, Նիկիտինո և Վոսկրեսենկա գյուղերի բնակիչները պահպանում են համայնքների ավանդական ձևն ու բնույթը, որը գոյություն է ունեցել իրենց պատմական հայրենիքում՝ նախքան տարհանումը: Դրանում փոքր դեր չի խաղացել նաև այն հանգամանքը, որ աքսորյալները նախկինում ապրել են նույն գյուղերում, պահպանելով իրենց ավանդույթները, ունակությունները: Դրա հետ մեկտեղ ձեռք են բերում ապրելակերպի նոր գծեր:

Կրոնական ու աշխարհիկ կյանքը, մոլոկանների մոտ միշտ սերտ հարաբերությունների մեջ է եղել: Անկախ նրանից, թե աղանդի որ ճյուղին են դավանել, կրոնական կենտրոնները գործել են միանպատակ ու միակամ:

19-րդ դարի 50-ական թվականներին Նիկիտինո և Վոսկրեսենկա գյուղերի մոլոկաններից, սոցիալական հակասությունների հողի վրա առանձնացան «պրիգունները» (**прыгуны -** ցատկողներ): Այս աղանդին հատուկ է էքստազային պաշտամունքը, ինչպես օրինակ «սուրբ հոգի» ստանալուց ցնցվելը: Մոլոկանների ավանդական սովորույթներին հավատարիմ մնացածները կոչվում են «պոստայաններ» (**постоянные** - մշտական):

1936 թ. Նիկիտինոն վերանվանվում է Ֆիոլետովո, իսկ Վոսկրեսենկան՝ Լերմոնտովո, ի պատիվ հեղափոխական գործիչների:

Ներկա պահին Ֆիոլետովոն միակ միատարր ռուսական գյուղն է Հայաստանում՝ 1520 բնակչով: Հարկ է նշել, որ 90-ականների մասսայական արտագաղթի ժամանակ, Ֆիոլետովո գյուղից մշտական բնակության է մեկնել ընդամենը 9 ընտանիք:

**- Միասնությունը կրոնական հիմքերի վրա է, աքսորից հետո մեր նախնիները որոշել են, որ եթե ռուսական հողի վրա մեզ համար տեղ չկա, ուրեմն Աստծո կամոք Հայաստանում է մեր ապրելու տեղը: Թե մեր հարևան մարգահովիտցիների, թե ընդանրապես հայերի հետ ոչ մի կոնֆլիկտ չունենք, չկա որևէ ազգային խնդիր: Ունենք ընդհանուր հոգսեր, որ ուս ուսի տված ցանկանում ենք լուծել**, - ասում է Ֆիոլետովոյի գյուղապետ Մ. Ի. Նովիկովը:

Դարերի երթին համընթաց, կողք կողքի, եղբայրաբար ապրում են հայն ու ռուսը: Հարատև է այդ եղբայրությունը, քանզի օրհասական պահերին երկու ժողովուրդների բարեկամությունն արյամբ է սրբագործվել:

***Ավագ ԽԱՌԱՏՅԱՆ***
***Մարգահովիտի երկրագիտական թանգարանի տնօրեն,***
***«Մարգահովիտ» թերթի խմբագիր***

# Ստեղծագործում են մեր ընթերցողները

*Ռոբերտ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### Ինչու՞...

Ինչու՞ է կյանքում տուժում պարկեշտը,
Ազնիվը, համեստը, առաքինին...
Իր խենթ պարն է բռնում զավեշտը,
Հաղթում հիմարը, լպպազն ու լկտին...

Ինչու՞ տգետ ու տականք չէի,
Անզուսպ կրքերին տրված լրկ...
Հարբեցող, թմրամոլ, խաղամոլ չէի`
Միգուցե՞ ավելի հարգեր ամեն ոք...

Մտածում եմ այսպես անվերջ,
Երբ նայում եմ ձեր անմեղ աչքերին`
Հին օրերի պայծառ լուսանկարին...
Մի՞թե անամպ անցյալին վերջ...

Ինչու՞ այդքան անբիծ ապրեցի,
Որ խղճի խայթ անգամ չեմ զգում:
Հրեշտակ չեմ բնավ` մարդ եղիցի,
Բայց սադայելն չկա իմ հոգում...

Նայում եմ նորից հին լուսանկարին,
Ուր երջանիկ եք դուք և ես...
Եվ ցավում է իմ սիրտը` կարծես
Դուրս թռել, ընկել է պաղ ու սուր քարին...

Աչքերիս վրա կարծես փառ է եկել,
Տանջված հոգուս նուրբ լարերը
Կրծքիս խորքում կուչ են եկել...
Այդ ո՞նց եղավ, թանկագինս,
Մոռացաք սեր, գուրգուրանք, ժպիտ`
Հիշվեց միայն խոսքս կոպիտ...

Էլ չեմ գտնում ես բառերը...
Ե՞րբ կգա ժամն ժողվել քարերը...

### Ես երազել եմ երկար քո մասին...

Ես երազել եմ երկար քո մասին,
Իմ չքնաղ, քնքուշ զավակ սպասված:
Երջանկության երանելի գիրկն ընկած,
Կրծքիս սեղմած քո բարուրը,
Մորս բերի ուրախ լուրը...

Ես քեզ եղել եմ և հայր, և մայր,
Տատիկ, պապիկ, մեծ եղբայր...
Դու մի աշխարհ էիր ինձ համար –
Մոռացել էի աշխատանք և պետ,
Բարեկամ, ընկեր, ձմեռ ու ամառ,
Խաղ ու պար, կեր ու խում, շրջապատ...

Քո աչքերի փայլով գերված,
Անհոգ ծիծաղի ձայնով հարբած`
Օրհնել ամեն պահ աստված`
Քեզ նման շռայլ պարգև տված...

Բայց ի՞նչ եղավ քեզ, ասա, -
Խամրեց սերը քո անբիծ...
Երբ անտարբեր հայացքդ տեսա,
Կարծես կրակ թափեց ամպից...

### Երկնագույն աչերը քո...

- Ներիր, - ասացի, - չեմ սիրում ես քեզ:
Նայեցիր դու ինձ շփոթված ու հեզ:
- Դու աստվածն ես իմ, - շշնջացիր, -
Փայլուն աստղս երկնքում անծայրածիր...

Ես հավատացի քո վառ խոսքերին,
Աստղերի պես փայլող աչքերին,
Հոգուս մեջ ինչ-որ բան հալվեց,
Երբ փոքրիկ ձեռքդ իմ ձեռքը շոյեց...

Անցան տարիներ, որ ետ չես բերի,
Հոգնեցիր դու քո սիրո բեռից...
- Ներիր, - ասացիր, - չեմ սիրում էլ քեզ:
Այժմ ես նայեցի շփոթված ու հեզ:

Ախ, չար բախտ, դու ի՞նչ արեցիր,
Փայլող աստղս երկնքում մարեցիր,
Ինչու այն հեռու պահին քեզ հավատացի,
Երկնագույն աչերիդ կանչով խաբվեցի...

**Բաղդասարյան Ռոբերտ Անդրանիկի**

**Ծնվել է 1947 թ. սեպտեմբերի 20-ին Երևանում, ունի երեք զավակ` երկու դուստր և որդի: Բանասիրական գիտությունների դոկտոր, գրականագետ, հրապարակախոս, թարգմանիչ, գրող, 4 գրքերի հեղինակ:**

---

### Իմ սիրելի թոռներ Նարեկին ու Ծովինարին

Նարեկա վանքը մտար
Ու խորոց սրտի ասացիր,
Նարեկացու վանքի որմին
Քո անունը մեզ տենչացիր...

Դուք սրտով միշտ ողջախոհ ու խորագետ,
Ակնակիր ջրի նման հոսող գետ,
Մորդ կաթով միացաք աշխարհի հետ,
Խորացաք ազգի ցավերի հետ հավետ:

Նարեկի հոգին` ձուլված տաղով ու երգով,
Մեղմ զեփյուռով ու օրորով ջրերի,
Իր կոմպյուտրային խելացի խաղերով
Միշտ հիացմունք է պատճառում բոլորին:

Այո՛, կա հիացում քո նուրբ պատկերով,
Նարեկ, թող աչքդ թրջվի մեռոնի ջրով,
Թող երգդ դառնա դարման, սպեղանի
Ու բուժիչ բալասան ամեն մի ցավի:

Իրոք որ, այդպես է միշտ հոգիդ թռվում
Ու արագ սլանում ուսումիդ ծովում, -
Կյանքդ թող դառնա ծաղկած բուրաստան,
Այն դայլայլով օծեն բլբուլ հազարան...

Սիրուց միշտ էրվում է Նարեկիս հոգին,
Ուսման գործին է նվիրված կաթոգին,
Իմաստուն մտքեր ունի, անխռով հոգի, -
Փարթամ մանուշակներ ու վարդեր` իր ճամփին:

***

Անարատ կույս է Ծովոն գեղեցիկ,
Կարծես թե թռչուն լինի երգեցիկ,
Ալ-կարմիր շորերով սիրտը ծածկված,
Խելացի է` ուսման գործին նվիրված:

Երգդ դարձել է դարման, սպեղանի,
Բուժիչ բալասան է ամեն մի ցավի, -
Իրոք, այդպես է միշտ հոգիդ թռվում
Ու արագ սլանում երազիդ ծովում...

Այսօր ջերմ զարուն է հոգիդ, Ծովինար, -
Չէ որ զուլալ երգեր են հնչում քո հոգում,
Ջերմ շշուկներ կան սրտիդ էջերում,
Ժպտա դու, քանի դեռ հոգիդ է զարուն:

Տա Աստված` Ծովս ծով խելք ունենա,
Ու Հայաստանը ծովից ծով դառնա,
Բայց երբ Նարեկս «Նարեկ»-ը կարդա,
Անշուշտ դրանից շատ բան կիմանա...

### Իմ թոռնիկներ Մասիսին եւ Սեւակին

Արևի ջերմ շողերի տակ
Դու ծնվեցիր, իմ Մասիս,
Աչքերդ վառ ու կապուտակ
Ոնց այրեցին իմ հոգին...

Մասիս, դու ես իմ բարձունքը,
Իմ աղերսն ու իմ արցունքը,
Ով չուզենա քեզ տուն տանի,
Աստված նրա արմատն հանի...

Աշնանային խենթ հովին
Կարոտ եմ ես քո դեմքին,
Արթնանում ես հուշերիս մեջ
Գիշերային ուշ ժամին:

Ոսկի թասում լցրած ջուր ես,
Քեզ խմողին կանմահացնես,
Գեղեցկության գաղտնի լույս ես,
Տեսնողի հոգին կհանես...

***

Մինչև Կարինես Կարինն իմանա,
Գուցե Կարինը նորից հայանա,
Մինչև Սևակս մի Պարույր դառնա, -
Հայոց հողերը թուրքին չեն մնա:

Լույս ու հույս ես դու, իմ Սևակ, -
Քո սիրտն է բաբախում կրծքիս տակ,
Դու ունես եղբայր, անունը` Արտակ,
Սիրիր ու փարվիր նրան շարունակ:

Յասաման ծաղիկ ես դու, Ստեփան, -
Ընդմիշտ աճես ու փարթամանաս.
Դու դարձածաղկի հոտ ունենաս, -
Ծնողներիդ համար լույս ու հույս դառնաս:

*Ստեփան ԱՅՎԱԶՅԱՆ*
*Հայաստանի գրողների միության անդամ*

# ПРЕЖДЕ ВСЕГО ПОЭТ...

Люблю юг, люблю теплое море, но совершенно не умею бездумно загорать на пляже. Порой кажется, что блокнот, с которым я никогда не расстаюсь, укоризненно шуршит на ветру страницами у самого моего уха: «Ах ты бездельник!». А что мне делать, если стихи почему-то не пишутся?

В том сентябре мне повезло. Поэт из Туапсе Семен Лившиц, которого я знаю еще по нашим сибирским встречам, познакомил меня с Владимиром Вартаняном: «Он пишет стихи на языке своих отцов – армянском, под псевдонимом Сираван Севуни. Может быть, возникнет желание что-нибудь перевести на русский?» «Попробую», - сказал я.

Но что значит «попробую»? Ведь армянского языка я не знаю. К счастью, у меня к тому времени накопился уже большой опыт перевода по подстрочнику. Подстрочник – это буквальный, слово в слово, перевод стихотворения. Ясно, что в таком переводе пропадают и рифма, и размер, остается один «голый» смысл. Такой текст надо снова сделать стихами только на другом языке.

Вскоре Владимир Вартанян, он же Сираван Севуни, привез мне подстрочники своих стихов. Он сделал их сам. Я прочитал их, и они меня заинтересовали. Сквозь нескладицу буквального перевода явственно звучала поэтическая мелодия. Теперь пляжные часы проходили не впустую: пока черноморское солнце делало свое дело (покрывало мою кожу загаром) я выводил и зачеркивал строчки в моем блокноте, стараясь передать на русском языке мысли и чувства моего нового знакомого.

Потом сотрудничество продолжилось по переписке. Мне было интересно переводить стихи Сиравана Севуни. В дни, когда в разных точках бывшего Союза то и дело вспыхивали национальные разборки, меня особо тронули его теплые слова о России. По-русски они зазвучали так:

У народов пути непростые
В испытаниях прожитых лет:
Армянин я, родился в России,
Ею выкормлен был и согрет.

И недаром так родственно святы
С детских лет, с незапамятных пор
Для меня высота Арарата
И российской равнины простор.

Меня совсем не смущало, когда от высоких материй Сираван Севуни вдруг переходил к делам сугубо земным, будничным, как в стихотворении «О чем шумят в Аракиче»:

Была там церковь с давних лет,
Но час пришел, и церкви нет,
Теперь она – убогий клуб,
Безглавый, полусгнивший куб.



Стреляет из щелей сквозняк,
Но кто заткнет их, чем и как,
Когда глава села Абрам
В соплях и в гриппе ходит сам?

Но больше всего Сираван Севуни пишет о любви. Его «строки любви» то сентиментальны, то страстны, в их кажущейся простогте вдруг открывается глубина:

Я тебя давным-давно
В мире повстречал.
Было сердце пронзено,
Только я молчал.

Молча я тебя любил,
Был тобой пленен.
Жил тобой, себя забыл,
Жизнь прошла, как сон.

Владимир Вартанян (как и я, между прочим) - ещё и профессиональный журналист, член Союза журналистов СССР, ему доводилось брать интервью у многих знаменитых современников. Член Союза армянских писателей Сираван Севуни автор семи сборников стихов, рассказов, анекдотов и воспоминаний, неоднократно печатался в журналах и газетах Бейрута и Лос Анджелеса. Недалеко от санатория ВВС «Чемитоквадже» он создал частный музей авиации и космонавтики, со многими космонавтами знаком лично, является Почётным членом Федерации Космонавтики России. О его музее, экспонаты которого личные подарки космонавтов, писали многие газеты и журналы Москвы, Санкт-Петебурга, Ростова, Тулы, Краснодара, Тбилиси, Сочи, Туапсе, были передачи по телевидению и радио Москвы, Краснодара и Сочи. Но для меня он прежде всего поэт. Поэт Сираван Севуни...

***Илья ФОНЯКОВ,***
***член Союза писателей Санкт-Петербурга.***

***Сираван СЕВУНИ***

## НОВЫЕ ПЕРЕВОДЫ
### (Ноябрь2008)

***

Черноянтарные простерла крылья
Над миром темнота, и весь я вновь
В мечтах о той, которой не забыл я -
О давняя, о первая любовь!

Та ночь была прохладна, безмятежна,
Легко шуршали волны по камням,
Мерцали звезды трепетно и нежно
И, кажется, завидовали нам.

Аккомпанируя любовной ласке,
В траве кузнечик песню начинал,
Свою любовь, красивую, как в сказке,
Он, может быть, при этом вспоминал.

И от луны была по глади моря
Дорожка светлая проведена
В далекий край, где ни тоски, ни горя.
Но медленно к закату шла луна.

И солнце мощное в небесной сини
Явилось, просияло с высоты,
И я один остался… Но поныне
Жду: ночь придет - вдруг с ней придешь и ты?

***

Приходят и уходят годы,
И голова моя бела,
Но сердцу матушка-природа
Остаться юным помогла.

В мои младенческие уши
Лилась не песня соловья –
Гремели залпами «катюши»,
Была война… Но выжил я.

Под вечным кровом небосвода
Рос без отца я, слав и сир,
Мне лишь окрестная природа
Была, как дивный эликсир,

Стихи в невзгодах утешали,
И ныне я в своем краю,
Как мальчик, песнь моей печали
Моей красавице пою.

### ПТИЦА

Осень. Ветер, дождь и грязь,
Вот и снег ложится.
Наземь с дерева спустясь,
Корма ищет птица.

Пробирает птицу дрожь
От холодной влаги,
Но без корма – пропадешь,
Как не знать бедняге?

А ведь скоро и метель
По горам завеет,
Залетит в любую щель,
Птиц не пожалеет.

Ты ведь нас, наш добрый бог,
Учишь состраданью –
Сам бы взял бы да помог
Своему созданью!

Ищет птица корм во мгле –
Клювику работа,
Чтобы сохранить в крыле
Силы для полета.

***

Ты говоришь, Алена:
«Мы – лишь друзья с тобой!»
Но может ли поляна
Не прорасти травой?

Земли весенней жажда
Утолена водой,
Любви и страсти жажду
Да утолю тобой!

На травы молодые
Отбросит пусть рассвет
Две наших слитных тени,
Как счастья силуэт.

Пускай плывет кораблик
Под парусом мечты,
В нем счастливы пребудем,
Алена, я и ты!

***

Сегодня ты в объятиях другого,
Того, кто нынче всех тебе милей,
И счастлив он, а я, как тень былого,
Бесследно таю в памяти твоей.

Как это больно!.. Листопад в долине,
Сияют золотистые лучи.
Я говорю: любовь, моя святыня
Полуразрушенная, замолчи.

Ищу при свете звезд в морском просторе
Желанный образ, в глубину смотря,
А рыбки тешатся любовью в море
И дразнятся: «Чудак, ты ищешь зря!»

Покажется порой, что ветер сонный
Твой аромат опять принес ко мне,
И снова я склоняюсь, побежденный:
Увы, ты не вернешься и во сне…

***

Годы мои, как ветер,
Промчались, умчались прочь.
О той, которой не встретил,
Печалюсь и день и ночь.

Былые бури, волненья
Как будто стихли во мне,
Но сердцу нет утоленья
И в нынешней тишине.

Все верит оно, страдая,
Надеется столько лет,
Что явится дорогая,
Вручит мне любви букет…

### ЧЕТВЕРОСТИШИЕ ИЗ РАССКАЗА

**Годы шли, незаметно приблизилась старость,**
**Но способность любить в моем сердце осталась,**
**И со мною весь мир был тоской обуян,**
**И взывал вслед за мной: «Ануш-джан, Ануш-джан!»**

***Перевёл с армянского Илья Фоняков.***

## СЛЕДЫ ДРЕВНИХ АРМЯН

# АРМЯНСКИЕ КОРНИ БАВАРЦЕВ

Немецкие исторические хроники свидетельствуют об армянском происхождении баварцев [5, 6]. Средневековая немецкая поэма «Песнь Ана» (XI век) сообщает, что отважное племя баварцев пришло из Армении [5]. «Песнь Ана» написана в 1980 году и посвящена епископу Кёльна Анно. В поэме описывается нашествие Юлия Цезаря на Германию. Вот соответствующий фрагмент из этой поэмы:

**…Когда Бавария сопротивлялась ему,**
**Цезарь занял Регинсбург.**
**Здесь он нашёл доспехи**
**и шлемы многочисленные,**
**И встретил множество героев метких –**
**Защитников города,**
**Вставших против него стеной…**
**Какими были отважными они,**
**Можно читать в манускриптах древних.**
**Здесь можно услышать о Noricus ensis,**
**Что означает «баварский меч»,**
**О том хотели римляне узнать:**
**Был ли лучше меч для удара?**
**Он пересекал весь шлем до конца.**
**Так воинский дух жил в нации этой**
**И отвага их тут выковалась.**
**Пришли они из Армении, страны горной,**
**Где Ной покинул ковчег свой,**
**Когда от голубя получил ветвь оливковую.**
**Ковчег и по сей день на месте своём,**
**На высокой вершине Арарата.**
**И говорят, там есть много людей,**
**всё ещё разговаривающих**
**на диалекте германском…**

«Согласно упомянутым выше хроникам, эти прибывшие из Армении смельчаки героически сражались против армии Юлия Цезаря. А это значит, что они были там ещё в II-I веках до Р. Х. Это подтверждают и другие источники» [2]. Не исключено, что древнеармянское племя баварцев пришло на нынешние германские земли не в II-I веках д.н.э., а намного раньше.

Из «Песни Ана» следует, что:

1. Предки баварцев пришли из Армении;
2. Языческие манускрипты, в которых описывается героизм пришлого армянского племени, не сохранились…
3. В XI веке Ноев Ковчег находился на большой вершине Арарата – на Масисе;
4. В XI веке в Армении всё ещё сохранились германо-говорящие люди….

Первые два утверждения, несомненно, отражают действительный исторический факт. Третье утверждение о том, что Ноев Ковчег и доныне находится на горе Арарат, высказывается, и по сей день. У нас нет достоверных доказательств этого утверждения. В XIX веке Ноев Ковчег видел Александр Сергеевич Пушкин: «Жадно глядел я на библейскую гору, – видел Ковчег, причаливший к ее вершине с надеждой обновления жизни», - писал великий поэт в своей книге «Путешествие в Арзрум». Может быть, Пушкину показалось, что он видел Ковчег? А, может быть, не показалось? В любом случае, Ковчег Ноя - проблема загадочная, не решённая.

Моё мнение: Ноев Ковчег был космическим кораблём инопланетян, спасавших человечество во время Всемирного потопа. Библия сообщает об этой истории в популяризованной, доступной в то время форме. Инопланетяне помогли нашим пращурам выжить и улетели к себе. Возможно, кое-кто остался просвещать род людской и растворился в нём. Согласно легендам, Ковчег причалил сначала к горе Арагац, а затем приплыл к горе Арарат и остановился на ней окончательно. Эта информация зафиксирована также в названиях гор. «Арагац» на древнеармянском языке означает «Стоянка Бога», а «Арарат» - «Обитель Бога». Отметим, что потоп оповестил о приходе Новой цивилизации, что отражено в имени праотца Ноя. «Ной» или «Нор» по-армянски: «Новый». Это слово, как и легенда о Всемирном потопе принадлежат истории индоевропейцев и их языку, поскольку в те времена их предки жили в Армянском Нагорье [1, 3]. Слово «ной» («нор») в той или иной

